1916

№ 2.—Յունուարի 3

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ գիւղացիների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր. կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտատրագեան հրապար. № 7.

**Հեռախօս № 29.**

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбавоберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## *ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1916 Թ.*

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ. 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն. 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն. 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ. 5. Փոստարկղ և յայտարարութիւն։*

*Թերթը բաղկացած կլինի 16 մեծադիր երեսներից և լոյս կտեսնէ կիրակի օրերը։*

*ՄԻՆՉԵՒ ԱՅԺՄ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ԵՆ ՏՈՒԵԼ ԱՇԽԱՏԱԿՑԵԼՈՒ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ԻՆ*

*Աբեղեան Մանուկ, Աղթանեան Գէորգ, Աղասարեան Բուզանդ (բժշկապետ), Այվազեան Բագրատ, Բաշինջաղեան Գէորգ (նկարիչ), Բերբերեան Մինաս, Դեմիրճեան Դերենիկ, Եսայեան տիկ. Զապէլ, Եղիկեան Դաւթեան Յով., Եղիկեան Գուրգէն, բժշ., Թումանեան Գէորգ, բժշկ., Թումանեան Մարիամ, բժշ. Թումանեան Միքայէլ, Թումանեան Յովհաննէս, Լէօ, Խանզադեան Ցոլակ, Կանայեանց Ստ., Կարապ (Թաշճեան Կ.), Ծուղուրեան Յարութիւն քահանայ, Մալխասեան Ստեփան, Մանուէլեան Միքայէլ, Մատէնճեան Մամբրէ, Մելեան Մեսրոպ քահ., Մուսայէլեան Հ., Յովհաննիսեան Միքայէլ, Յարութիւնեան Իսահակ, Յովհաննիսեան Հայկ, Յովհաննիսեան Տիգրան Նար-Դոս, Նաւասարդեան Բագրատ (բժշկապետ), Շարաֆեան Ալեքսանդր, Շիրվանզադէ, Չալխուշեան Գր., Ջամալեան Արշակ, Սպենդիարեան Յովհաննէս, Տէր-Դանիէլեան Դաւիթ, Տէր-Գէորգեան Վահան, Տէր-Միրաքեան Յովհաննէս, Փիրալեան Յարութիւն, Փիրումեան Տիգրան, Քամալեան Սարգիս, Օլթեցեան Արամ։*

Խմբագիր՝ Ա. Յարութիւնեանց

Հրատարակիչ՝ Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութիւն



# Կ. Հ. Բ. Ը-ը եւ Հայկ. Կենտ. Կոմ. շնորհակալութեամբ ընդունում են նուէրներ,—դրամ, իրեր եւ ուտելիք,—տեղական չքաւորների եւ գաղթականների համար առաջիկայ Ծննդեան տօների առթիւ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ*)

Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան կենտրոնում վաղուց էր զգացւում սեփական օրգան ունենալու անհրաժեշտութիւնը: Այս ընկերութիւնը, հետզհետէ ընդարձակելով իր գործունէութիւնը, բազմացնելով իր ճիւղերի թիւը, արդէն դարձել է համակովկասեան մի խոշոր հիմնարկութիւն, որ կենտրոնացնում է իր մէջ հայ ժողովրդի մի նշանաւոր մասի ինքնագործունէութեան ձգտումները, գլխաւորապէս կրթութեան ասպարէզում: Եւ ահա անհրաժեշտութիւն էր ծագում, որ այդ հիմնարկութիւնը կարողութիւն ստանար պարբերական հրատարակութիւններով կենդանի կապ պահպանել իր և հասարակութեան մէջ, մշտապէս ներկայացնել հասարակութեան իր գործերը, իր նպատակները, իր ձգտումները, իր կարիքներն ու պահանջները, մի խօսքով լայն կուլտուրական պրոպագանդ անել հայութեան մէջ և գործով ու խօսքով զարգացնել հասարակական ինքնօգնութեան ժողովրդականացումը, միաժամանակ փոխադարձ շփումների յարմարութիւն և խրախոյս ստեղծել Ընկերութեան բազմաթիւ ճիւղերի մէջ և դրանով նպաստել, որ գաւառական կարիքները փաստացի և լայն արտայայտութիւն գտնեն մեր հասարակական կեանքի մրցարանում:

Այս՝ առաջին անմիջական նպատակն էր: Կար և երկրորդ, ոչ պակաս կարևոր նպատակը: Իւրաքանչիւր ազգութիւնը կենդանի է իր կրթական-կուլտուրական հիմնարկութիւններով, որոնք ներկայացնում են նրա ամբողջ քաղաքակրթական կողմը, կենսունակութեան երաշխիքները: Հայութիւնն ունի բազմաթիւ այդպիսի կազմակերպութիւններ, որոնցից իւրաքանչիւրը ծառայում է յատուկ մի նպատակի: Բարեգործական Ընկերութեան խորհրդի միտքն էր դարձնել ծրագրած պարբերական հրատարակութիւնը մի տեսակ ժամադրավայր, ուր հայկական բոլոր ազգային հիմնարկութիւնները կարող կը լինէին հանդէս գալ իրանց գործով, իրանց համարատուութեամբ, իրանց դիմումներով ու ծրագրներով: Այս կը լինէր մի տեսակ ընդհանուր միութիւն հայ ժողովրդի մէջ գործող կուլտուրական ոյժերի, մի միութիւն, որ փոխադարձ օգնութեան ու միահամուռ աշխատակցելու հիմքերը կարծարծէր մեր ընդհանրապէս համերաշխութիւնից զուրկ ցաւալի իրականութեան մէջ:

II

Եթէ այդպիսի մի հրատարակութեան պահանջը շատ զգալի էր սովորական և խաղաղ ժամանակներում, այսօր այդ պահանջը այլևս անյետաձգելի է դարձել: Այսօր հայ ժողովուրդը անօրինակ աղէտաւոր կացութեան մէջ է գտնւում. բնական պատահարներից առաջացած աներկրութիւն, հարիւր հազարներով գաղթականներ, հիւանդութիւններ, ապրուստի թանգութիւն և այլն: Բազմաթիւ և ահաւոր են այն կարիքները, որոնք միացել են հայութիւնը հարուածելու: Եւ այս մեծ վտանգը պահանջում է, որ հայութիւնը լարէ իր բոլոր ոյժերը, գործի դնէ իր ինքնապաշտպանութեան բովանդակ կորովը՝ այս ահաւոր փորձութիւններին որքան կարելի է քիչ զոհեր տալու համար: Եւ Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութիւնը, որպէս մի հիմնարկութիւն, որի պարտքն է ծառայել հայ ժողովրդին, մանաւանդ աղէտների միջոցին, ներկայիս աւելի մեծ կարիք ունի իր գործն ընդարձակելու, հասարակութեան աջակցութիւնը աւելի լայն և խոր կերպով կազմակերպելու ու հայ ժողովրդին ոյժ և խրախոյս ներշնչելու համար:

Այս բոլորը նա կարող է կատարել իր շաբաթաթերթի միջոցով: Ահա ինչու նա շտապեց, չը նայած տպագրական ծանր պայմաններին, իրագործել այդ հրատարակութիւնը հէնց այժմ:

III

Այսպիսով, ուրեմն, «Համբաւաբերը» գալիս է նախ և առաջ ծառայելու Բարեգործական Ընկերութեան նպատակներին:

Բայց սահմանափակուել միմիայն այդ նպատակներով կը նշանակէր հրատարակել մի պաշտօնական չոր ու ցամաք թերթ, որ հէնց այդ հանգամանքի շնորհիւ դատապարտուած կը լինէր շատ նեղ շրջանակների գոհացում տալու: Այսպիսի մի արդիւնք անօգուտ պէտք էր համարել, քանի որ հասարակական ինքնօգնութեան գործը արդիւնաւորելու համար պէտք է որ նա ժողովրդականանայ ամենալայն չափերով: Այս նպատակով էլ «Համբաւաբեր» շաբաթաթերթը յատուկ պաշտօնական մի թերթ չէ, այլ ժողովրդական-հանրամատչելի մի հրատարակութիւն, որ պիտի աշխատէ գոհացում տալ իր ընթերցողների մտաւոր բազմակողմանի պահանջներին: Այս նպատակն էլ Բարեգործական Ընկերութեան պարտաւորութիւնների մէջ է մտնում և գծագրուած է Ընկերութեան կանոնադրութեան 2 յօդուածի դ. կէտի մէջ:

Ինչպէս ցոյց է տալիս վերևում զետեղուած ծրագիրը, շաբաթաթերթը, իր պաշտօնական բաժնից դուրս, պիտի աշխատէ ամփոփել շաբաթական կեանքը հարազատ և անկողմնակալ ժամանակագրութեան մէջ, առանձին տեսութիւնների առարկայ

---

*) Ներկայ յօդուածը մենք առանձին թերթիկ յայտարարութիւնների ձևով դեկտեմբերին ցրեցինք Թիֆլիսի հայ լրագիրների միջոցով և պէտք է զետեղուէր «Համբաւաբեր»-ի առաջին համարում, բայց տեղի պակասութեան և տպագրական անյարմարութիւնների պատճառով չկարողացանք: Դնում ենք այժմ, քանի որ սրա մէջ պարզաբանուած են մեր շաբաթաթերթի ծրագիրն ու նպատակները:

դարձնելով ներկայ պատկերացմը, համաշխարհային կեանքը, յատկապէս Ռուսաստանի և հայկական կեանքը։

Ընթացիկ ժամանակագրական նիւթերի հետ «Համբաւաբերը» կը տայ մշակուած և հանրամատչելի գրուածքներ գրական-գիտական բովանդակութեամբ, ինչպէս նաև գեղարուեստական գրուածքներ։ Մենք պիտի աշխատենք մեր համեստ դիրքի չափով հետաքրքրութիւն զարթեցնել դէպի մայրենի գրականութիւնը, որին առաջին նշանակութիւն ենք տալիս իբրև մեր ազգային կեանքի առաջնակարգ գործօնի, շարունակ մեր ընթերցողներին մօտ պահել մեր քաղաքական, կուլտուրական և գրական պատմեան անցքերին ու փաստերին։ Հաւասար չափով ուշադրութիւն դարձնենք և գիտական յօդուածների վրայ, որոնք գիւղացական, տնտեսական, առողջապահական և այլ հանրաշահ հարցեր կը շօշափեն։

Ինք ըստ ինքեան հասկանալի է, որ «Համբաւաբերը», իբրև ժողովրդական հանրամատչելի թերթ, չէ կարող պատկանել որև է կուսակցութեան, մեր հասարակութեան մէջ գոյութիւն ունեցող որևէ հոսանքի։ Ունենալով միմիայն ժողովրդին ծառայելու նպատակը, նա իր էջերը միշտ բաց կը պահէ հայ մտքի և զգացմունքի պէս պէս արտայայտութիւնների առաջ։ Բաւական է, որ այդ արտայայտութիւնները լինին անկեղծ, շնորհալի, համակուած գրականութեան, գիտութեան և ժողովրդի իրական ցաւերով։

«Համբաւաբերը» իր նպատակներից մէկը կը համարի պաշտպանել և արծարծել համերաշխութեան և գործակցութեան գաղափարը Կովկասի բազմալեզու և բազմակրօն ազգութիւնների և առանձին ուշադրութեամբ և սիրով կը հետևի նրանց մտաւոր և կուլտուրական կեանքին։

Բաց անելով «Համբաւաբերի» առաջին տարուայ բաժանորդագրութիւնը, մենք սիրում ենք հաւատալ, թէ մեր գործը աւելորդ չի համարուի մեր բազմակարօտ ժողովրդի սպասին և մեզ չի զլացուի մեր հասարակութեան, մեր կուլտուրական մարմինների, մեր մտաւորականութեան լայն նիւթական և բարոյական աջակցութիւնը։

---

## 1915

– Հայութիւնն անց կացրեց մի տարի, որ գուցէ իսկապէս ամենադարհուրելին է նրա երկհազարամեայ պատմութեան մէջ։ Այդ դարհուրելի տարուայ ամբողջ պատկերը դեռ յայտնի չէ մեզ, ռուսահայերիս, իր բոլոր մանրամասնութիւններով։ Հայաստանի մի խոշոր մասը դեռ թիւրքական բանակի թիկունքում է գտնւում և շարունակում է մնալ արիւնոտ մշուշով ծածկուած մի երկիր։ Բայց այն տեղեկութիւններն էլ, որոնք հատ ու կտոր կարողանում են թիւրքական սուինների վրայով անցնել Արևմտեան Եւրոպա, այն աստիճան ահասարսուռ են, որ ամեն տեղ, Եւրոպայում թէ Ամերիկայում, ըմբռնում են իբրև հայութիւնը բնաջինջ անելու մի հրէշային սիստեմ։

Ներկայումս այդ դժբախտ ժողովուրդը ծայրայեղ տագնապի է մատնուած։ Բուն երկրում համատարած կոտորածներից յետոյ մնացել են փոքրաթիւ քանակութեամբ հայեր։ Մի շատ մեծ հատուած, որ, ոմանց հաշուով, հասնում է կէս միլիոնի, տեղահան է արուած ու քշուած է Միջագետք և Սիրիա։ Մի այլ մեծ հատուած, պատերազմի հետևանքով, փախել ապաստանել է մեզ մօտ, Կովկասում։ Եւ այս երեք ցաք ու ցրիւ հատուածները մատնուած են ոչնչացման վտանգին։ Եթէ Թիւրքիայում մոնղոլական եաթաղան է, որ մահ է սպառնում ապրողներին, այստեղ, մեզանում, այդ եաթաղանի փոխարէն քաղցն ու հիւանդութիւնն է ոչ պակաս անողոք վտանգ նիւթում։

Նոր տարուայ հետ սովորաբար կապւում են ակընկալութիւններ և բարեմաղթութիւններ։ Ի՞նչ կարող է ակնկալել հայը այս անօրինակ սգալի տարեգլխին։ Ի՞նչ է բերում Նոր տարին։ Արդեօք բնաջնջման ճակատագրի շարունակութիւն, թէ հարիւրաւոր սերունդների ակնկալած անդորրութիւնը, հայրենի տան ազատութիւնը...

Գուշակութիւններ անելու հնարաւորութիւն չըկայ։ Գիտենք որ ամեն ինչ կախուած է համաշխարհային պատերազմի ելքից։ Մեր ճակատագիրը կռում-կոփւում են ահաւոր մարտի մէջ նետուած մեծ ազգերը։ Բայց նշանակո՞ւմ է այս, թէ մեզ անելիք չէ մնում, թէ մենք ձեռքներս ծալած պիտի նստենք։

Այս հարցերին մեր կեանքը վաղուց է ամենակտրուկ ժխտական պատասխան տուել։ Այսօր մենք յետ ենք մղել մեր բոլոր կարիքներն ու պէտքերը, առաջնակարգ հրամայողական պահանջ դարձնելով պաշտպանել ու պահպանել այն ժողովրդի բեկորները, որ մոնղոլական վայրագութիւնը դատապարտել է բնաջնջման։ Այս րոպէին ոչ մի ազգ, որ մեր բարեկամներից է, չէ կարող զէնքով ճնշել այդ վայրագութիւնը, ուստի ուր որ կայ համակրանք և ցաւակցութիւն դէպի մեզ, այնտեղ աշխատում են ուրիշ խաղաղ միջոցներով կասեցնել ջնջման սիստեմի դէմ։ Մի կռիւ է դա, որի նշանաբանն է՝ ջանալ որքան կարելի է շատ ու շատ կեանքեր խլել մահուան ճիրաններից։

Եւ այդ կռուի ամենախոշոր մասը, բնականաբար, հայ ժողովրդի բաժին պիտի ընկնէր։ Ի պատիւ այդ ժողովրդի պէտք է ասել, որ նա ամեն տեղ զգաց ահաւոր րոպէի կարևորութիւնը և լայն բաց արաւ իր սիրտն ու գրպանը։ Ահագին գումարներ, կազմուած մեծագոյն մասամբ ժողովրդական կոպէկներից, մտել են այն հիմնարկութիւնների դրամարկղերը, որոնք յատուկ նպատակ ունեն տարաբախտ թիւրքահայերի կեանքը փրկելու։ Այս հողի վրայ էլ զարգացել է հասարակական լայն գործունէութիւն, որ դժան 1915 Թուականի պատմութեան մէջ պիտի կազմեն մէկից աւելի լաւագոյն և գեղեցիկ էջեր...

Սակայն, որքան էլ լարուած լինէր հայ ժողովրդի ինքնագործունէութիւնը, դժբախտութիւնն այնքան ահռելի էր, որ ազատել մեզ մօտ ապաստանուած հայութիւնը անհնարին պիտի լինէր, եթէ մեծ Ռուսաստանը իր ուժեղ և սրտաբաց հովանաւորութիւնը չը տարածէր կործանման անդունդին հասած ժողովուրդի վրայ։ Պետական գանձարանից առատ նպաստներ յատկացուեցին գաղթականներին պահպանելու համար։ Առաջին անգամն է որ հարստահարուած թիւրքահայը եւրոպական մեծ պետութեան այսքան հզօր աջակցութեան և խնամքին է արժանանում։ Պետական այդ մեծ նպաստների շնորհիւ էր որ

մենք կարողացանք աւելի ընդարձակել մեր ինքնապաշտպանողական գործունէութիւնը։

Աւել թէ այդ գործունէութեան ասպարէզում մենք հասել ենք կատարելութեան, չէ կարելի։ Փորձի, անակնկալութիւնների, վհատութեան տարի էր դա, և մենք շատ բան կորցրինք հէնց այդ պատճառով։

Այս նոր տարում, յուսանք, աւելի նպաստաւոր կը լինեն հանգամանքները, ու մենք կը գործենք աւելի մեծ ստեղծագործական եռանդով, տոգորուած այն խորին համոզմունքով, որ ներկայի մեր գործունէութեամբ մենք մեր ապագան, մեր ազգային ճակատագիրն ենք դարբնում։ Թիւրքահայերին կոտորածից և վայրենացումից փրկելը միայն մարդասիրութեան, եղբայրութեան պարտք չէ։ Դա ցեղային մեծ խնդիր է ամբողջ հայութեան համար և կուլտուրական մի մեծ պահանջ Առաջաւոր Ասիայի համար։

Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութիւնը, որի հետ այս ցեղային-կուլտուրական մեծ հարցի մէջ միացած է Հայկական Կենտրոնական Կոմիտէն, նոր տարեշրջանի սկզբին ջերմ փափագներ է յայտնում, որ հայ հասարակութիւնը աւելի ևս պարտաճանաչ հանդիսանայ այս պատմական ժամանակներում, աւելի մեծ պատւով, կրկնակի և եռակի վառ ոգևորութեամբ խմբուի իր այն հիմնարկութիւնների շուրջը, որոնք հայի փրկութեան սուրբ գործն են իրականացնում, լինի նրանց զօրավիգն ու աջակիցը, տանէ նրանց դէպի նորանոր յաղթանակներ այն կռուի մէջ, որ վիճակուած է մեր ազգին հայաջինջ վայրագութիւնների դէմ…

Աշխատանք և հաւատ…

# Ներքին տեսութիւն

## ՄԵԶԱՆՈՒՄ ԶԵՄՍՏՈՒՕ ՄՏՑՆԵԼՈՒ ՆԱԽՕՐԵԱԿԻՆ

Ինչպէս յայտնի է՝ նոր փոխարքայ մեծ իշխան Նիկոլայ Նիկոլաեւիչի առաջին քայլերից մինն էր նրա այն կարգադրութիւնը, որ իր դիւանատանը կազմուի մեր երկրում զեմստուային ինքնավարութիւն մտցնելու նախագիծը, որի քննութեանը պիտի հրաւիրուին և հասարակութեան ներկայացուցիչները։

Մեզանում, ինչպէս և բուն Ռուսաստանում, գիւղացիներից տուրքեր են առնում տեղական կարիքների համար, բայց այդ տուրքերը ծախսում են ոչ թէ ժողովրդի ընտրուած անձինք, ինչպէս այդ տեղի է ունենում քաղաքներում յանձինս քաղաքային վարչութիւնների, այլ ոստիկանութիւնը և վարչութիւնը յանձինս պրիստաւների, գաւառապետների, նահանգապետների, նրանց ծառայողների և փոխարքայի խորհրդի։ Մինչդեռ ներքին Ռուսաստանում, որտեղ կան զեմստուային հիմնարկութիւններ, արագ աճում է ուսումնարանների, հիւանդանոցների, դեղատների, բժիշկների, գիւղատնտեսների թիւը, արագ շինւում են ճանապարհներ, կամուրջներ, բերւում են գիւղատնտեսական գործիքներ և այլն, իսկ մեզանում բոլորովին այլ պատկեր է։ Գիւղը բոլորովին անօգնական է, անգրագէտ են համարեա ամենքը, արագ զարգանում են վարակիչ հիւանդութիւնները, չկան ճանապարհներ և, առհասարակ՝ այն, ինչ քիչ ու շատ տանելի է դարձնում գիւղացու կեանքը։

Մեզանում զեմստուային ինքնավարութիւնը մտցնելու անհրաժեշտութիւնը այնքան ակնյայտնի է, որ ով փոքր ի շատէ գաղափար ունի ռուսական զեմստուօյի մասին, պաշտպանում է այդ բարեփոխութիւնը մեզանում իրագործելու մասին։ Սակայն՝ այդ պահանջը ակնյայտ դարձաւ մանաւանդ պատերազմի ժամանակ։ Մինչդեռ քաղաքները, որտեղ զեմստուօյի նման ինքնավարութիւն կայ, միջոց և ճանապարհն են գտնում հիմնելու հիւանդանոցներ, կազմակերպելու փախստականներին օգնելու գործը, օգնութեան գալու զէնքի կոչուածների ընտանիքներին, կռուելու թանգութեան դէմ, ընդհակառակը՝ գիւղերը, գաւառները և ամբողջ նահանգներ ընկել են անօգնական դրութեան մէջ և իրենց ամբողջ յոյսը դրել են քաղաքների կամ պետական գանձարանի օգնութեան վրայ։

Այս դրութեան մէջ բնական էր յիշել, որ մեզանում շատ անգամ է յարուցուել զեմստուօյի խնդիրը, որ առաջ են մղել հասարակութիւնները, համագումարները, մամուլը և ինքը կառավարութիւնը, բայց գործը միշտ խանգարուել է, երբ խօսքը վերաբերուել է մեզ հարկաւոր զեմստուօյի տիպին։

## ԻՆՉՊԻՍԻ ԶԵՄՍՏՈՒՕ Է ՀԱՐԿԱՒՈՐ ԿՈՎԿԱՍԻՆ

Այս հարցին մեր հասարակական գործիչների մեծամասնութիւնը մինչև այժմ միշտ պատասխանել է… «Մեզ հարկաւոր է նոյնպիսի զեմստուօ, ինչպիսին գործում է Ռուսաստանի միւս վայրերում»։

Իրաւ է, գտնուել են և այնպիսիները, որոնք իրենց աչքերը չեն փակել Ռուսաստանում գործող զեմստուային կանոնադրութեան պակասութիւնների վրայ և կարծել են, որ այդ թերութիւնները մեզանում պէտք է վերանան։ Սակայն՝ մեծամասնութիւնը տարուել է սրան. «Մեզ աւելին չեն տայ, քան այն, որից օգտւում է ամբողջ պետութիւնը։ Առնենք գոյութիւն ունեցող հաստատութիւնները իրենց առաւելութիւններով և պակասութիւններով։ Իսկ յետագայում, երբ Պետական Դուման բարուոքումներ կը մտցնէ գործող զեմստուօյի մէջ, նա, հաւանօրէն, չի մոռանայ և մեզ»։

Բայց չէ՞ որ Կովկասում կան այնպիսի առանձնայատկութիւններ, որ չկան ուրիշ տեղում։ Արդեօք հարկաւոր չէ՞ այդ ի նկատի առնել։ Սրան պատասխանել են «ճիշտ է, առանձնայատկութիւններ կան, բայց նրանք չպէտք է խանգարեն գոյութիւն ունեցող զեմստուօյի ընդհանուր սիստեմը»։ Այս հիմամբ՝ 1909 թուականի այն խորհրդակցութիւնները, որոնց մասնակցում էին տեղական հասարակական գործիչներից շատերը, այն միտքը յայտնեցին, թէ հարկաւոր է նուազեցնել ընտրական ցենզը (մեզանում խոշոր կալուածներ շատ քիչ կան), թէ պէտք է զեմստուային յանձնել ջրաբաշխական գործերը, հաշտարար դատաւորների ընտրութիւնը և այլն։ Իսկ ընդհանուր սիստեմը խորհրդակցութիւնների նախագծի մէջ պահպանուեց։

Ոմանք, ի նկատի ունենալով մեր երկրի բազմացեղութիւնը, առաջարկում էին մտցնել ազգային կուրիաներ։ Բայց մեծամասնութիւնը վճռականապէս մերժեց այդ, ի նկատի առնելով, նախ այն, որ զեմստուօն զբաղուած է տնտեսական և ոչ թէ քաղաքական գործերով, հետևաբար՝ զանազան ազգութիւնների այդ ասպարէզում միասին գործելը ոչ միայն չի սաստկացնէ նրանց մէջ եղած թշնամութիւնը, այլ, ընդհակառակը, կը մօտեցնէ իրար բազմազան տարրերը, և ապա ազգային կուրիաները չեն կարող փոքրամասնութեան աւելի մեծ ձայն տալ, քան մեծամասնութեան և միայն աւելի սուր կերպարանք կը տան բնակչութեան զանազան մասերի յարաբերութեանց։

Բայց ներկայ պատերազմը առանց այդ էլ սրեց ազգային հարցը Կովկասում։ Նա մեր հասարակութեան ստիպեց ամեն ինչի նայել քաղաքական տեսակէտից։ Եւ նոյն իսկ այնպիսի տնտեսական օրգան, ինչպիսին է զեմստուօն, դարձաւ ազգային պայքարի զէնք։ Այս բանը առաջ մղեց այն հարցը, թէ չի՞ կարելի

Հացը, շաքարը, իւղը և կենդանապահական արտադրութիւնները մեր արտահանութեան առարկաներ էին—Ռուսաստանը կերակրում էր Եւրոպան գիւղատնտեսական մթերքներով։

Աչքի անցկացնելով վերջերս հրատարակուած վիճակագրական տեղեկութիւնները՝ մենք տեսնում ենք, որ Ռուսաստանը արտահանել է.

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1910 թ. | հաց | — 619,2 միլ. փութ, իսկ | | |
| 1912 » | » | 522,4 » | | |
| » » | կովի իւղ | — 4,5 » | 68,5 միլ. ր. | |
| » » | շաքար | — 23 » | 56,7 » » | |
| » » | ձու » | — 3397 » | 84,6 » » | |

Չնայած արտահանութեան այսքան կրճատուելուն՝ կարծես թէ այս մթերքները անհետացել են և ներքին շուկայից։

Մինչև այդ մթերքները հոսում էին երկրի ներսում, որ իր ժամանակին արտադրութեան կենտրոններից չէին բնաւ բաւել սպառման գլխաւոր կենտրոնները, որտեղ սովորական պաշարը արագ սկսում էր վերջանալ։ Այդ պաշարների պակասն անկարելի էր լրացնել որովհետև երկաթուղիների շարժական կազմի մեծագոյն մասը սկսեց ծառայել պատերազմի կարիքներին, ուստի և՝ ուտելեղէնների քաղաքները ներմուծումը սաստիկ պակասեց, իսկ պարբերաբար նոյն իսկ բոլորովին ընդհատւում էր։ Այս վերջին հանգամանքը առաջ բերեց արտադրութեանց առաջարկի կրճատում, իսկ արտադրութեանց պակասութեան դէպքում բնականաբար բարձրանում են գները։

Պետական Դուման դեռ ևս 1912 թուի նախահաշիւը քննելիս մատնացոյց արաւ, որ նոյն իսկ խաղաղ ժամանակի համար բաւական չէ մեր երկաթուղիների շարժական կազմը։

Չնայած արտադրութեան տեղերում ամբարուած առաջնակարգ մթերքների պաշարի շատութեան, սպառման վայրերում, մանաւանդ մեծ քաղաքներում, գները բարձրանում են շնորհիւ մթերքների անկանոն ներմուծման և ապրանքի առաջարկի նուազման. քաղաքներում և ընդհանրապէս սպառման շուկաներում առևտրականները այլ ևս չեն որոնում գնորդներ. անհետացել է վաճառողների մրցումը, այն բարերար մրցումը, որը, գալով ինչպէս արտադրողներից, այնպէս և մանաւանդ միջնորդ-առևտրականների [illegible], ապրանքների գները պահում է կանոնաւոր բարձրութեան վրայ։

Սակայն՝ կենսական մթերքների գների բարձրանալը ունի և մի այլ կարևոր պատճառ, այն է՝ գործածութեան մէջ եղած դրամանիշերի շատանալը կամ, ինչպէս սովորաբար ասում են, փողի առատութիւնը։ Պատերազմից առաջ մեր պետութեան մէջ շրջանառութիւն կար 1633 միլիոնի թղթադրամ, իսկ այժմ 5113 միլ. Աւելի կամ պակաս չափով դրամանիշերի քանակը աւելացել է աշխարհի և միւս, ինչպէս պատերազմող, այնպէս և չէզոք, պետութեանց մէջ։ Շնորհիւ այն հանգամանքի, որ մեզանում թղթէ դրամանիշերը 2½ անգամ շատացան, [illegible] պաշարի անհամապատասխան չափով ընկնում է թղթէ րուբլու արժէքը նոյն իսկ երկրի ներսում, էլ չենք ասում արտասահմանում։ Այս տարուայ մարտի 14-ին, հիմնական օրէնքների 87-րդ յօդուածի հիման վրայ, Բարձրագոյն հաստատուեց նախարարների խորհրդի որոշումը, որով ոսկի արդիւնաբերողներին նշանակւում է 30% պրեմիա՝ ոսկին արքունական գանձարանին յանձնելու համար։ Այս նշանակում է, թէ թղթադրամ րուբլու արժէքը դառնում է սոսկ 77,7 կոպէկ։ Բնական է, որ թղթէ րուբլու արժէքն ընկնելով արտադրութիւնների գներն էլ բարձրանալու են 22,3%-ով։ Սակայն պէտք է ի նկատի ունենալ, որ գործնականում այս հանգամանքը գներն աւելի է բարձրացնում, և թղթէ րուբլու արժէքն ընկնելու պատճառով ընդհանրապէս մթերքների գների 25—30% բարձրանալը այժմեան պայմաններում պէտք է համարել աւելի կամ պակաս բնական։

(Կը շարունակուի)

Յ. Փիրալեան

# ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ ՍՈՑԻԱԼ-ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ

Բարեգործութիւնը մի քաղաքատնտեսական ու սոցիալ-կուլտուրական երևոյթ է, որ երևան է գալիս ու զարգանում որոշ կուլտուրական միջավայրում։ Բոլորովին անկուլտուր կամ կիսակիրթ հասարակութիւնների մէջ բարեգործութիւնը զարգացման սոցիալտնտեսական հիմքեր չունի։ Հասարակութիւնը պէտք է զարգացման որոշ աստիճանի հասնի, աշխատանքի բաժանումն ու դասակարգային յարաբերութիւնները պէտք է բաւականին զանազանաւորուած լինին, և չքաւորութիւնը (պաուպերիզմը) պէտք է որոշ չափով ընդհանուր չարիք դառնայ, որպէս զի մի հասարակութեան մէջ բարեգործութիւնը իբրև հասարակական խնամք՝ և փոխադարձ օգնութեան մի տեսակը զարգանայ։

Բարեգործութիւնը առաջ է եկել ողորմածութիւնից։ Բոլոր կրօններն էլ, մանաւորապէս բուդդայականութիւնն ու քրիստոնէութիւնը, պատուիրում են առատաձեռն ու ողորմած լինել։ Ողորմածութիւնը աւելի մեծ չափով զարգանում է քրիստոնէութեան սկզբնական շրջանում և միջին դարում։ Միջնադարեան վանքերը Եւրոպայում, ինչպէս և մեզնում միաբանութիւնները, իսկական բարեգործական հաստատութիւններ էին և նոյնիսկ խաչակիր «Հիւրընկալների» կարգը։

Յետագայում, երբ հասարակական կեանքը զարգանալով դուրս է գալիս եկեղեցու ու հոգևորականութեան խնամակալութիւնից՝ կրօնաբարոյական անհատական «ողորմութիւնը» դառնում է աշխարհիկ ու սոցիալական ձեռնարկութիւն—«բարեգործութիւն»։ Այս կամ այն բարեգործի միջոցներով կամ հասարակութեան նուիրատուութիւններով հիմնւում են որբանոցներ, անկելանոցներ, դպրոցներ հասարակութեան չունևոր ու աղքատ անդամների համար։

Սկզբներում բարեգործութիւնը կարծես «անհատական» բնոյթ ունէր, նա հոգում էր չքաւորների նիւթական կարիքները, «խնամում» էր նրանց։ Յետագայում դա նաև կուլտուրական դեր է ստանձնում և հոգում հասարակութեան անկարող անդամների նաև հոգեկան և մտաւոր կարիքները։ Իսկ զարգացման աւելի բարձր աստիճանի վրայ դա աւելի ընդարձակ, համաժողովրդական նշանակութիւն ունեցող ձեռնարկութիւններ է սկսում։

Եւրոպայում շատ նշանաւոր հաստատութիւններ բարեգործական ծագում ունեն, իսկ այժմ աւելի մեծ չափերով բարեգործութիւնը սոցիալ-կուլտուրական երևոյթ է դառնում Ամերիկայում, մի անհատապէս ու կուլտուրապէս աւելի զարգացած երկրում։ Սակայն՝ դա ընդհանուր կուլտուր-հասարակական նշանակութիւն է ստանում տնտեսապէս ու քաղաքականապէս աննպաստ պայմաններում գտնուող երկրներում, այնտեղ, ուր համայնքը ինքը չի կարողանում իր սեփական միջոցներով իր գլխաւոր կարիքներին բաւարարութիւն տալ։ Նման հասարակութիւնների մէջ «բարեգործութիւնը» լայն մտքով՝ կուլտուրական հաստատութիւններ երևան գալն ու պահելը հարուստ մարդկանց միջոցներով դառնում է ոչ միայն մի սովորական հասարակական երևոյթ, այլ և մի տեսակ սոցիալ-կուլտուրական անհրաժեշտութիւն։

Առանց բարեգործութեան կուլտուրապէս զարգանալ և առաջադիմել չեն կարող այն ժողովուրդները, որոնք իրենցից անկախ պատճառներով համայնական ուժերով և սիստեմատիկ կերպով հանրօգուտ հաստատութիւններ կեանքի կոչել և պահել չեն կարողանում։ Մանաւորապէս մեր հայ ժողովրդի կուլտուրական ու մտաւոր կեանքը հիմնուած է բարեգործութեան վրայ։ Առանց բարեգործութեան առայժմ մենք կուլտուրապէս ապրել չենք կարող։ Մեր բոլոր կուլտուրական հաստատութիւնները բարեգործութեան արդիւնք են

կամ պահում են բարեգործութեամբ, պատահական նուիրատւութիւններով։ Յիշենք միայն, օր.՝ Մուրադ-Ռաֆայէլեան վարժարանը, Լազարեան ու Գէորգեան ճեմարանները, Սանասարեան վարժարանը, Ներսիսեան դպրոցը, Յովնանեան դպրոցը, Գայեանեան դպրոցը. Մանթաշեանի հաշուով շինուելիք դպրոցական շէնքը, Շուշւայ և այժմ էլ Շամախու թեմական դպրոցները, Ազգագրական և հրատարակչական ընկերութիւնները, ուսուցչական ֆոնդը, մեր մամուլը, նոյն իսկ «դեմոկրատականը» անգամ մասնաւոր հրատարակութիւններն ու որոշ չափով էլ բարձրագոյն կրթութիւն ստանալու գործը և այլն և այլն։ Մի խօսքով, հազիւ թէ լինի մի քիչ թէ շատ աչքի ընկնող հանրօգուտ գործ, որ այս կամ այն չափով բարեգործութեամբ չպահէր իր գոյութիւնը։ Դեռ չենք յիշում զուտ բարեգործական ընկերութիւնները, որպէս Կովկ. Հ. Բարեգ. Ընկ., Եգիպտոսի բարեգործականը, Կուլտուրական Միութիւնը և այլն։

Այսպէս կամ այնպէս մի սոցիալ-տնտեսական փաստ է, որ թէ Եւրոպայում ու Ամերիկայում և թէ մանաւանդ մեզնում բարեգործութիւնը հասարակական-կուլտուրական կեանքի գործօններից մէկն է։ Այնպէս որ՝ որոշ հասարակութիւնների համար հրաժարուել բարեգործութիւնից նշանակում է հրաժարուել կուլտուրական շինարար աշխատանքից ու կեանքից։ Եւ բարեգործութիւնից օգտուելը կամ դրան դիմելը մի «վատ» կամ «ձրիակերութեան սովորութիւն» չէ։ Նման հնամաշ մաքերը ոչինչ չեն ապացուցում, այլ որոշ քաղաքական-ազգային ու սոցիալ-տնտեսական դրութեամբ պայմանաւորուած բնական մի երեւոյթ, կուլտուրական մի անհրաժեշտութիւն։

Ներկայիս բարեգործութիւնը մանաւանդ հայ հասարակութեան մէջ բնական ու անհրաժեշտ մի ժողովրդատնտեսական ու սոցիալական երեւոյթ է, որ իր կուլտուրական դերն ունի կատարելու մեր կեանքում, մինչեւ որ այդ դերը իր վրայ կվերցնեն տեղական ինքնավար մարմինները։

Վ. Խորէնի

---

## ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԾԱԳՄԱՆ, ԱՐԴԻ ԿԱՑՈՒԹԵԱՆ Կ. Հ. Բ.-ԹԵԱՆ- ԵՒ ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ

### I

Թիւրքիայի պատերազմը ունեցաւ հայ ժողովրդի համար չափազանց աղէտալի և աւերիչ հետեւանքներ։ Արիւնռուշտ սուլթանը տասնեակ տարիներից ի վեր սիստեմատիկ կերպով աշխատում էր իրագործել իր հրէշաւոր ծրագիրը—Հայաստանը առանց հայերի, պատերազմը սկսուելուց յետոյ, ամենայն ցինիկութեամբ առաջ է տանում իր դիւային քաղաքականութիւնը, ստեղծելով ամենուրեք հայկական ջարդ։

Նրա գազանային ախորժակը աւելի եւ գրգռում են սուլ. բանակի նահանջները՝ նոյեմբերի 25—26-ին Բէօփրի-քէօյից, դեկտեմբերի 18—19-ին Սարիղամիշից և յուլիսի 13-ին Մանազկերտից և ապա Վանից։ Այս բոլորի արդիւնքն լինում է բազմաթիւ բնատեղերի փախուստը, որոնք, կորցնելով իրենց բնակիչների անդամների 2/3-ը, թողած տուն ու տեղ, մի կերպ հասնում են Կովկաս և ապաստանում կովկասահայ եղբայրների մօտ։

Գաղթականական հոսանք ունեցել ենք Տաճկահայաստանի համարեա բոլոր վայրերից, որ անցել է Կովկաս՝ Կարսի, Իգդիրի և Ջուլֆայի գծերով։

Առաջին գծով անցել են գլխաւորապէս Տաճկաց Բասենի բնակիչները, թւով 18,91 հոգի *.

Երկրորդով Բիթլիսի, Մշոյ, Վանայ, Մանազկերտի, Պատնոսի, Ճնթափի, Արտաղայի, Ալաշկերտի շրջանների բնակիչները, թւով 170,000.

Երրորդով անցել են՝ Աղրակի, Պարսկաստանի շրջանի բնակիչները 18,055, ընդամենը՝ 207,473 տաճկահայ և պարսկահայ փախստական. բացի այդ՝ նոյն վիճակին ենթարկուել են՝ Օլթիի, Արդանուշի, Արթուինի և Արդահանի բնակիչները, թւով 7320 անձ։

Պէտք է շեշտել, որ այդ թւերի մէջ ի նկատի չեն առնուած Վանայ շրջանի այն գաղթականները, որոնք անցել են Պարսկաստան և մնացել այնտեղ, մօտ 10,000 և 3500 որբ, որոնք տեղաւորուած են ապաստարաններում։ Ուրեմն՝ բոլոր փախստականների թիւը հաւասար է 229,293-ի։ Դոցանից 55% պատկանում է իգական սեռին, որից 30% երեխայ, իսկ 45%-ը ար. սեռին, որից 25%-ը երեխայ են. բացի այդ՝ արական սեռի մնացած 20%-ից 10%-ը ծեր են, անընդունակ աշխատանքի, հետեւապէս աշխատաւորների թիւը հասնում է 10%-ի։ Չպէտք է զարմանալ այդ բանի վրայ, որովհետեւ անխնայ կոտորածի ենթարկուել է գլխաւորապէս արական սեռը։

Կոտորածի և զոհերի ահռելիութեան պերճախօս ապացոյց կարող են լինել մեր ձեռքի տակ գտնուած մի քանի վայրերին վերաբերեալ հետեւեալ թւերը։ Կոտորուել են՝

I. Բասենի շրջանում . . . 195 հոգի.
II. Աղրակի, Արտաղայի, Պարսկ. շրջաններում 299 »
III. Բիթլիսի, Խլաթի շրջաններում . 10,500 . »
Սրանց ուղարկել են Սղերդ և ճանապարհին կոտորել։
IV. Բուլանխի շրջանում . . . 7,5000 »
V, Մշոյ դաշտում . . . . 110,000 »
Նրանցից ազատուել են միայն մօտ . . 10,000 »
VI. Խնուսի շրջանում . . . 19,000 »
VII, Մանազկերտի և Պատնոսի շրջաններում 950

Բացի այդ՝ Վանի նահանջի ժամանակ ճանապարհին, էջմիածնում, Իգդիրում, Երեւանում և այլ վայրերում մեռել են մօտ՝ 20,000 հոգի։

Փախստականները, բացի մարդկային զոհերից, նիւթապէս միանգամայն քայքայուել են։

Որպէս զի որոշ գաղափար կազմուի նոցա կորստի մասին, առաջ ենք բերում մեր ձեռքի տակ գտնուած թւերը, որ վերաբերում են՝ Բասենի, Արտաղայի, Աղրակի, Ալաշկերտի և Պարսկաստանի 53,265 գաղթականներին։

Ունեցել են՝
լծկան՝ 38,659, կթան՝ 27,940, ձի և աւանակ՝ 3,941, մանր անաս.՝ 140,625, փութ ցոր.-գարի, ալիւր՝ 2,590,494, սայլ՝ 7,905, փութ խոտ 2,885,450, փութ ցանքս 369,880։

Ազատել են՝
լծկան՝ 1,020, կթան՝ 670, ձի, աւ.՝ 310, մանր ան.՝ 2,159, սայ 310, իսկ ազատածը 116,000 րուբլու։ Ուրեմն՝ եթէ 53,265 փախստականների կորուստը 13 միլ. է, միջին թւով բոլոր փախստականներինը կարելի է ընդունել 64 միլ., իսկ ազատուածը 524,000 ր., այսինքն ½%-ից էլ պակաս։

Այդ թշուառ և անտէրուած փախստականների առաջ իրենց դռները բաց արին Կովկասի զանազան վայրեր, որտեղ նորա տեղաւորուած են այժմ հետեւեալ կերպով՝

Ա. Կարսի նահանգ.
1. Կարսի գաւառներում . . . 2,821 անձ
2. Արդահանի գաւառ . . . 2,165 »

* Յիշեալ թւերը քաղուած են իմ և ընկեր աշխատակիցներիս ուսումնասիրութիւններից, որոնց յայտնում եմ իմ շնորհակալիքս։

| | | |
|---|---|---|
| 3. Զարիշատի գաւառակ | 259 | » |
| 4. Շորագեալի գաւառակ | 1,938 | » |
| 5. Նախիջեւանի գաւառակ | 1,220 | » |
| 6. Խորասանի գաւառակ | 1,283 | » |
| 7. Կաղզուան քաղաքում | 470 | » |
| 8. Ղարսում | 1,859 | » |
| 9. Արդահանում | 378 | » |
| 10. Բասենի նուաճուած գիւղերում | 3.525 | » |
| II. Գանձակի գաւառում | 8,000 | » |
| III. Ղազախի գաւառ. | 3,500 | » |
| IV. Նոր Բայազիտի գաւառ | | » |
| 1. Ելենովկայի շրջանում | 1,671 | » |
| 2. Ախտալայի շրջանում | 3,493 | » |
| 3. Բայազէտի շրջան | 5,918 | » |
| V. Ղարաքիլիսայի շրջանում | 5,000 | » |
| VI. Ալեքսանդրապոլի շրջ. | 27,000 | » |
| VII. Վաղարշապատի շրջ. | 25,000 | » |
| VIII. Իգդիրի շրջանում | 12,000 | » |
| IX. Երեւանի շրջանում | 28,000 | » |
| X. Բորչալուի շրջանում | 3,500 | » |
| XI. Հին-Նախիջ. և Շարուր Դարալագեազի շրջ. | 5,300 | » |
| XII. Պարսկաստանում | 28,000 | » *. |
| XIII. Թիֆլիսում | 3,000 | » |
| XIV. Որբեր զանազան որբանոցներում | 3,500 | » |

XV. Մնացեալները ապաստանել են՝ Արծափի, Մոսունի, Ախալքալաքի, Բաթումի և Կովկասի այլ շրջաններում։

Այժմ կանգնենք գաղթականների արդի կացութեան։

(շարունակելի) Ա. Շարաֆեան

## Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ԵՒ ՀԱՅ ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ՏԱՐԵԳԻՐ

### ՍՄԲԱՏ ՏԷՐ-ԱՌԱՔԵԼԵԱՆ



Սմբատ Ստեփանեան Տէր-Առաքելեանը ծնուել է 9 մարտի 1863 ամի Վաշլեան գիւղում և վախճանուել Թիֆլիսում 7 մայիսի 1915 թ.։ Հանգուցեալը իւր կրթութիւնը ստացել է Տէր-Յակոբեանի գիշերօթիկ դպրոցում (պանսիոնում) և պարապել վաճառականութեամբ։ Համարեա իւր ամբողջ կարողութիւնը կտակել է ընկերութեանս այն է՝ ա) մի տուն, որ գտնւում է Թիֆլիսի 3-րդ քաղաքամասում, Սերգիեւսկի փող. № 3. (մօտ 100,000 ր. արժողութեամբ)։ բ) Կեանքի ապահովագրական գումար Նիւ-Եորք Ընկ. 10,000 րուբլի։ գ) անշարժ կալուածք Վաշլեան գիւղում—մի տուն և մի այգի, մօտ 5000 ր. արժողութեամբ։ Իսկ Թիֆլիս քաղաքի ձրի և էժանագին ճաշարաններին թողել է «Россія» Ապահովագրական Ընկեր. մէջ դրած գումարները։

Համաձայն կտակողի կամքի՝ Վաշլեան գիւղում խորհուրդը բաց է արել ծխական դպրոց, ուր սովորում են մօտ 60 տղայ և աղջիկ միասին։

## ՆՈՒԷՐՆԵՐ.—Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԵԱՄԲ ՍՏԱՑԵԼ Է

— Ցխնուալի ճիւղի վարչութիւնից 100 ր. «Համբաւաբերի» ֆոնդի համար։

— Գաղթականների օգտին ստացուել է 1) Արտաթումանի ճիւղից ներկայացման արդիւնք 80 ր. 07 կ. 2) նոյն ճիւղից տաք շորեր պատրաստելու 86 ր. 59 կ. 3) Ռոման Զախարեան Ռոմանեանից տօնածառի զարդեր. 4) Անյայտ տիկնոջից 10 ր. 5) Աննա Զիթողցեանից պարբերական նուէր 9 ր. 6) Վասիլ Զաքարեանից 3 ր. 7) ըստ կտակի Եկատերինէ Սոլ. իշխ. Բեհբուդեանի յօգուտ չքաւորների 50 ր. 8) Փոխադր. Վարկի Ընկ. 15 ր. 9) Ժողոված Մ. Արամեանի շինութեան վրայ զանազան անձերից 100 ր. 10) Տիկին Աննա Գէորգեանից Ը-թեան ճաշարանի համար 24 հատ աղաման։ 11) Սկոբիից (Կիեւ նահ.) երգ. համատ. պ. Սահակ Մելքիսեդեկեանից 25 ր. 12) Մարիուպոլի հայկական կոմիտէից 200 ր. 13) Ախալցխայի կանանց բարեգ. ընկ. օգոս. 23-ին կազմակերպած երեկոյթից գոյացած 361 ր.

— Պ. Սերգէյ Իվ. Պօղոսեանի ընտանեկան հրաւէրի ժամանակ ժողոված 110 ր., պ. Գրիգոր Տէր-Մարուքեանից հինգ կտոր շոր (մէկը ներքնակ), եղբ. Զիրուխչեաններից 40 ր., որից 20 ր. որբերի և 20 ր. քաղաքիս չքաւորների օգտին։ Ն. Վ. Ա-ից Վանի որբերի օգտին 10 ր. «Тифл. Лист.»-ի խմբագրութեան միջոցով իշխ. Արղութեան-Երկայնաբազուկից 50 ր.

— Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացաւ Ռէյսենբախից Ս. Յարութիւնեանի միջոցով 5 րուբլի գաղթականների օգտին, որ յանձնեց Կ. Հ. Բ. Ը-թեան։

— Մի խումբ աղուեցի տիկիններից—9 բարձի երես։

— Թիֆլիսի վաճառականական-Կոմիտէից — 100 բարձի երես, 100 բայկոյի վերմակ, 100 ներքնակ, 100 բարձ, 100 սաւան, 200 շալուար և 200 բլուզ։

— Օդեսայի Հայ կանանց Կոմիտէից—101 վերմակ, 1850 կտոր զանազան նոր և հին շորեր։

— Սոչիից և Գէլէնջիկից Тверск. М-ра Մահտեսեանից և Աւետիսեանից 7 վերմակ, 151 կտոր հին շորեր։

— Պարսկահայ գաղթակ. նպաստող Յանձնաժողովից 265 կտոր նոր վերարկուներ։

— Թէոդոսիայի Հայկ. Կոմիտէից 929 կտոր հին շորեր։

— Արտաթումանի Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղից 58 կտոր հին շորեր։

— «Հորիզոն» լրագրի խմբագրութեան միջոցով Սամարա-Թագուհի Սարֆոյեանից մի պարկ զանազան շորեր։

— Նիւ-Եորկ (Екатер. губ.) Դարբինեանից 2 կապոց հին և նոր շորեր։

— Տաշքենտ—Կ. Օ. Քարամեանից մի կապոց զանազան հագուստ։

— Սոչի—Մ. Կակոսեանից 2 կապոց զանազան հին և նոր շորեր։

— Կաղզուան—Մ. Ա. Բեգարովից մի կապոց հագուստ։

— Խրիմից—Ն. Քոչարեանից մի կապոց զանազան շորեր։

* Այդ թուի մէջ մտնում են և մօտ 12,000 պարսկահայ, որոնք թէպէտ վերադարձել են, բայց այնքան քայքայուած դրութեան մէջ են, որ նոցա վիճակը նոյն է, ինչպէս տաճկահայ գաղթականներինը։

Կոմիտէի անդամ պ. Մ. Բալանթարեանից, որ 1200 ր. վարձէ Տէր-Յակոբեանի ամբողջ տունը Կրծանիսում։

Նկատի ունենալով, որ Կարսում այժմ 1,300 փախստականի կառավարութիւնը դադարել է նպաստ տալուց, յանձնել նրանց միանուագ 3000 ր. և աշխատել նրանց համար Կարսում գոնէ 4 ամիս ևս ապրելու միջոցներ գտնել։— Որբանոցների պէտքերի համար գնել մի վագոն գետնախնձոր։— Որբանոցների հիւանդանոցի բժ. Մարկոսեանի ռոճիկը 100 րուբլուց բարձրացնել 130 ր.՝ պայմանով, որ նա շաբաթական 2 անգամ այցելէ —Թիֆլիսի որբանոցները։ Ուսուցչ. կոմիտէին տալ 500 ր. գաղթական անպաշտօն ուսուցիչներին նպաստ տալու և 100 ր. Թիֆլիսի գաղթականական դպրոցի երեխաների վրայ տօների առթիւ ծախսելու համար։

Դիլիջանի արհեստանոցին փոխադրել 1,500 ր.։ Գաղթականական յանձնաժողովին տալ 750 ր. Թիֆլիսաբնակ փախստականների համար առաջիկայ տօների առթիւ։ Ուղարկել Կ. Հ. Բ. Ընկ. գաւառական ճիւղերի վարչութեանց գաղթականական դպրոցների ուսուցիչների յունուարի և դեկտեմբերի ռոճիկները։ Թիֆլիսաբնակ գաղթականներին շարունակել նպաստ տալ մինչև յունուարի 10-ը։— Գաղթականական բիւրոյի ծառայող ուս. Կարաջեանին նշանակել ամսական 35 ր. ռոճիկ։— Դիմել կառավարութեան, որ աջակցէ Վանից այստեղ 100 որբ տեղափոխելու գործին, միաժամանակ յայտնել այդ մասին Վեհափառ Հայրապետի Դիւանատանը, որտեղից հաղորդուած էր յիշեալ որբերի տեղափոխութեան անհրաժեշտութեան մասին։ Կ. Հ. Բ. Ընկ. Իգդիրի ճիւղի վարչութեանը թոյլ տալ գործ դնել փախստականների սպիտակեղէնի համար Իգդիրում գտնուած 9110 արշ. կտաւը։—Ընդունել Ներսէս եպ. և պ. Ս. Տիգրանեանի Ջուլֆայից ուղարկելիք 50 որբը։ Յատկացնել Կոմիտէի աշխատանոցի համար բուրդ գնելու 7000 ր.։ Յարիցինից Կիստովան հեռագրում է. «Հայուհեաց Կոմիտէն պատրաստել է 600 փ. ալիւր ու հագուստ որբերի համար։ Իրերը ուղարկում են Էջմիածին։

## ԴՐԱՄԱՐԿՂ

### ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ 1-Ն ՅՈՒԼ. ՄԻՆՉ 18 ԴԵԿՏ. 1915 Թ.

| | | | Ր. | Կ. |
|---|---|---|---|---|
| Մնում էր կանխիկ դրամ առ 1-ն յուլիսի 1915 թ. . . . . . . . | | | 25,175 | 72 |
| ՄՈՒՏՔ | | | | |
| Кавказскій Комитетъ ից . . . . . | 262,000 | — | | |
| Комитета помощи пострад. отъ войны армян. въ П-градѣ . . . . . . | 46,500 | — | | |
| Զանազան անձերից և կոմիտէներից . | 136,940 | 47 | | |
| » » յետ ստացուած առկախ գումարներ . . . . . . . | 70,477 | 32 | | |
| | | | 515,917 | 79 |
| Ընդամենը. . | | | 541,093 | 51 |
| ԵԼՔ | | | | |
| Սնունդ փախստականներին — ալիւր, հաց, թէյ, շաքար և այլն . . . . | 58,031 | 98 | | |
| Պարբերական դրամական նպաստներ . | 43,838 | 66 | | |
| Վերմակներ, անկողիններ, կօշիկներ, հագուստներ և այլն. . . . . | 225.239 | 96 | | |
| Փախստականների տեղափոխութեան ճանապարհածախս. . . . . . . | 235 | 20 | | |
| Բժշկական օգնութիւն, դեղօրայք, հիւանդանոցների կահաւորումն և նրանց ընթացիկ ծախսեր. . . . . | 21,083 | 07 | | |
| Ճանապարհածախսեր կոմիտէի յանձնարարութեամբ (командировки). . | 1,585 | 85 | | |
| Միանուագ նպաստներ փախստականներին և ապաստարաններին, ապաստարանների շինութեանց վերանորոգումները. . . . . . . . . | 47,118 | 61 | | |
| Ընդհանուր ծախսեր — գրասենյակի, պօստ և հեռագիր, տպագրական, ռոճիկ, ճանապարհածախս և այլն . | 10,210 | 33 | | |
| Ուսումնական պարագաներ — դասագրքեր, տետրներ և այլն. . . . . | 1,896 | — | | |
| | 409,239 | 66 | | |
| Առկախ գումարներ զանազան անձանց մօտ . . . . . . . . . | 4,400 | — | 413,639 | 66 |
| Մնում է առ 18-ն դեկտ. 1915 թ. | | | 127,453 | 85 |

Ծանօթ. Ընդհ. մուտք 16 նոյեմբ. 1914 մինչ 18 դեկտ. 1915 . . . 646,367-72
Ընդհ. ելք 16 նոյեմբ. 1914 մինչ 18 դեկտ. 1915 . 518.913-87
Մնացորդ առ 18-ն դեկ. 1915 . . 127,453-85

— Գաղթական որբերի ապաստանները։ Կովկասում պատսպարուած գաղթականների հետ, ինչպէս յայտնի է, կան մեծ թւով որբեր, որոնց համար բացուել են ապաստարաններ Թիֆլիսում, Դիլիջանում, Ղարաքիլիսայում, Երևանում, Իգդիրում, Էջմիածնում, Ղարսում, Հին-Նախիջևանում, Բաքւում, Ղզլարում, Գանձակում, Նոր Բայազէթում, Աշտարակում։ Բացուելու են նոր ապաստարաններ ևս, որովհետև երեխաների ստուար մասը դեռ չէ ընդունուած ապաստարաններում։

Ի նկատի առնելով, որ շատ ծնողներ ու ազգականներ փնտռում են իրենց երեխաներին, ուստի Կ. Հ. Բ. Ընկերութիւնը որոշել է «Համբաւաբեր» թերթի մէջ պարբերաբար տպել բոլոր ապաստարանների երեխաների անուանական ցուցակներ հարկաւոր տեղեկութիւններով։ Ցանկալի է, որ ապաստարանների վարչութիւնները շտապին ուղարկել խմբագրութեանս իրենց ապաստարանների երեխաների անուանացուցակները։ Տպագրութիւնը կը սկսուի առաջիկայ համարից։

# Արտաքին տեսութիւն

## ՀԱՅԿԱԿԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆԸ

«Contemporary Rueviewa» թերթի մէջ հայոց հարցի մասին տպագրուած է Վիլեամի յօդուածը, որ քաղուածօրէն առաջ ենք բերում։ Քաղաքակրթուած աշխարհը սարսափից լսելով հայոց նոր կոտորածի լուրը, որը տարւում էր սառնարիւն, աւելի լաւ կազմակերպուած և աւելի մեծ չափերով, քան նախորդները.

Այդպիսի բան կատարուած չէ նոյն իսկ Լանկթամուրի ժամանակները. փաստերը ճշտուած են զոհերից և ականատեսներից, այլ և դաշնակից պետութեանց հպատակներից, որոնք կարողացել են փախչել Տաճկաստանից, այլև Տրապիզոնի Իտալիայի հիւպատոսի մանրամասն ու սարսափելի հաշուետւութեամբ այն իրողութեանց, որ կատարուել են նրա աչքի առաջ և վերջապէս գերմանական միսիոնարների և գթութեան քոյրերի բողոքներով։

Կոտորածը տարւում էր խիստ և որոշ սիստեմով, որի կազմակերպութիւնը ընկնում է գերմանական հիւպատոսների վրայ։

Կոստանդնուպոլսից հրամայուած էր երկրի բոլոր վայրերից հայերին գաղթեցնել դէպի անապատները կամ վատառողջ վայրեր։ Զինուորութեան ընդունակ հայերի մեծ մասը կանչուած էր զէնքի, իսկ մնացածները բռնուած և գնդակահարուած։

Ծերերին, կանանց և երեխաներին տրուած էր միայն մի քանի ժամ պատրաստուելու հեռաւոր ճանապարհ գնալու, նրանց քշեցին կենդանիների հօտի նման, որոնցից շատերը մեռան ճանապարհին սովից և հարուածներից։ Շատերը կողոպտուեցան և սպանուեցան հէնց այն քրդերից և ոճրագործներից, որոնց իբր պաշտպանութեան տակ նրանց քշում էին։ Քաղաքներում ջահել կանանց և երեխաների վաճառում էին տաճիկներին, իսկ զինուորներին իրաւունք էր տրուած ճանապարհին կանանց հետ վարուել։

ինչպէս կամենային։ Բայց, որ գարհուրելին է, շատ անգամ աղջիկներին և տղաներին ծախում էին հասարակաց տների համար։ Տրապիզոնում նաւակներ նստեցրին 8 կամ 10 հազար մարդ և խեղդեցին ծովի մէջ։ Եղան դէպքեր, երբ կանայք ծծկեր մանուկները գրկներին, իրենց ձգում էին Եփրատ գետը, որպէս զի ազատուին անպատուութիւնից և տանջանքներից։ Անկարելի է հաշուել տարագրուած սպանուած և բռնի թրքացրած հայերի թիւը։ Ենթադրում են, որ Տաճկաստանում ապրում էին 1 ու կէս—2միլիոն հայ։ Այդ թւից 200,000 հոգի ապրում էին Կ.Պոլսում, որոնք համեմատաբար քիչ տուժեցին, բացի աքսորուածներից։ Մի հաշուով աքսորուածների թիւը հասնում է 800,000-ի, որոնցից հազիւ 1/3 մասը տեղ է հասել, մինչդեռ ըստ Ֆրանսական պաշտօնական հաղորդագրութեան մնացած են 800,000 հոգի։ Նրանցից շատ քչերը կարողացան զէնք գտնել և պաշտպանուել լեռներում։ Ամեն օր մեզ մօտեցնում է այն րոպէին, երբ հայութիւնը իսպառ պիտի անհետանայ Տաճկաստանից։

Եւրոպան շատ բան է պարտական է հայերին, որոնք իբր պահապան դիմադրում էին ասիական հորդաների արշաւանքներին։

Ներկայ ժամանակում նրանք միջնորդի դեր են կատարում արեւմտեան քաղաքակրթութեան և արեւելեան ազգերի մէջ։ Ահա թէ ինչու կարևոր է այդ ազգը փրկել կորուստից։

Սարսափելին այն է, որ Գերմանիան, եթէ նա նոյն իսկ մասնակից չէ եղել այդ ոճիրին, այդպէս տառապելին հանդիսատես է եղել և չէ գործ դրել իր ազդեցութիւնը, որպէս զի ետ կանգնեցնի ոճիրների այդ շարքը։

Բայց միւս մեծ պետութեանց վրայ էլ ընկնում է յանցանքի մի մասը։

Բարբարոսների մէջ ապրող հայերի կրթութեան և քաղաքակրթութեան վրայ արդարև պէտք է զարմանալ։ Սակաւ բացառութեամբ հայերը միշտ օրինապահ և մինչև իսկ խիստ խոնարհ ժողովուրդ են, բայց վերջին տարիները նրանք պահանջեցին բարենորոգումներ, որոնց ոճիրներ կատարածով պատասխանեցին։

Ռուսաստանում, մանաւանդ վերջին տասնամեակի ընթացքում, երբ ռուս կառավարութիւնը հայերին վերաբերում էր աւելի ազատ քաղաքականութեամբ, հայերն ապրում էին լաւ։ Նրանք Ռուսաստանին տուին նշանաւոր զօրավարներ, որոնցից են Լորիս Մելիքեանը, Տէր-Ղուկասեանը և այլն, ռուս զօրքի մէջ ծառայում են 100,000 հայ, և ռուսաց դրօշի տակ կռւում են մի քանի հազար կամաւոր։

Պարսկաստանում ապրող 200,000 հայերը կազմում են պարսիկ ժողովրդի պարծանքը։

Տաճկաստանից դուրս ապրող հայերի գոյութիւնը կազմում է այդ ցեղի շարունակութիւնը, սակայն տաճկահայ մնացորդների փրկութիւնը մեր պարտաւորութիւնն է։

Նրանք բոլորը կարիք են զգում շուտափոյթ օգնութեան։ Կովկաս փախածները բոլորն էլ հիւծուած են և մեծ նեղութեան մէջ։

Ռուսահայերը անդադրում օգնում են թէ իրենց եղբայրակիցներին և թէ Տաճկաստանի միւս փախստականներին, Միացեալ Նահանգները շատ բան արին հայերի թշուառ դրութիւնը բարուոքելու համար։

Անցածը ի նկատի ունենալով, Անգլիան պարտաւոր է օգնել հայերին և ջերմ մասնակցութիւն ունենալ փախստականներին կորստից ազատելու համար։

## Համաշխարհային պատերազմ

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

(Տեսութիւն)

ա. Կովկասեան ճակատ։ Վերջին երկու շաբթուայ ընթացքում պատերազմական նշանաւոր գործողութիւններ չեն եղել։ Նկատելի է թուրքական առաջխաղացութեան փորձեր ծովամերձ շրջաններում։ Այսպէս՝ թուրքերը 10 օրուայ ընթացքում չորս անգամ փորձ են արել անցնել Արխաւէ գետը (Ռիզից հարաւ-արեւմուտք), սակայն՝ չորս անգամն էլ յետ են մղւում։ Այս յարձակողական տրամադրութիւնը կարելի է բացատրել նրանով, որ պատերազմի դաշտն են հասել Տրապիզոնից անցած այն զօրամասերը, որոնց մասին մօտ մի ամիս առաջ խօսում էին յամառօրէն կամ՝ որ ծովամերձ շրջանի զօրքերը օգնութիւն են ստացել Էրզրումից։ Համենայն դէպս՝ դրութիւնն այս գծի վրայ լրջանում է։ Վերջին պաշտօնական հաղորդագրութիւնը այլեւս հասարակ ընդհարումների մասին չէ խօսում, այլ ճակատամարտների մասին, որոնք տեղի ունին մեր սահմանից ոչ հեռու՝ Օլթի և Սարիչայ գետերի հովիտներում։

Կովկասեան ճակատի այլ գծերի վրայ համեմատական հանդարտութիւն է տիրում։

Սակայն՝ թէ Էրզրումի շրջանից և թէ Ալաշկերտից ստացուող լուրերից երեւում է, որ թշնամին պատրաստութիւնների վրայ է, և մօտիկ ապագայում լուրջ պատերազմական ձեռնարկներ կարող են լինել այս ճակատի վրայ։

բ. Պարսկական ճակատ։ Պարսկաստանի ճակատի վրայ ռուսաց զօրքը, . . . . . . . . .

. . . . . . . . . . .

. . . . . . . . . . .

. . . . . . . . . . .

Առաջին գծով շարժուող ռուսական բանակի յաջողութիւնները միանգամայն շշմեցրել էին թուրք-գերմանական գինակցութեան կողմնակիցներին։ Իրար յետեւից Ղումն ու Համադանը գրաւելուց և «ժամանակաւոր կառավարութիւնը» Սպահան քշելուց յետոյ՝ ռուսաց բանակը շարժւում է Քիրմանշահի ուղղութեամբ։ Նրա վերջին գործն էր Ասադ-Աբադ քաղաքի մօտ 500 հոգուց բաղկացած ժանդարմներին ցրելը և նրանց պարենակիր խումբը գրաւելը։

Այս բանակի յաջողութիւններին պէտք է վերագրել, որ Պարսկաստանի քաղաքական օրիէնտացիան այնքան արագօրէն փոխուեց։ Մօտ երեք շաբաթ առաջ շահը կառավարութեան ղեկը յանձնեց ռուսական քաղաքականութեան կողմնակից Ֆարման-Ֆարմային, որ կազմել է մինիստրութիւնը գրեթէ բացառապէս իր համախոհներից։

Այսու հանդերձ „ժամանակաւոր կառավարութիւնը" դեռ չի հրաժարւում Պարսկաստանը թուրք-գերմանական գինակցութեան գիրկը նետելու ծրագրներից։ Նա յոյս ունի թուրքերի և գերմանների աջակցութեամբ պարսիկ թափառական ցեղերից կազմել 120—159 հազարանոց մի բանակ և դրա օգնութեամբ ոչ միայն ռուսներին դուրս քշել Պարսկաստանից, այլ և անգլիացիներին Միջագետքից։ Այս ծրագիրը նրան այնքան հաւանական է թւում, որ Թեհրանի կառավարութեան բոլոր յորդորները հնազանդուելու իրեն՝ ապարդիւն են անցնում։

Ուրմիայի գծով շարժուող զօրքերի մի ջոկատը Ինգերքեաշ գիւղի լեռնանցքում պատահելով թիւրք զօրքերի՝ ստիպուած է եղել յետ նահանջել մինչև Շհանգար։ Թէ ինչով է վերջացել այս գործողութիւնը՝ դեռ յայտնի չէ։ Վերջին ժամանակներս թէ Ուրմիոյ լճի հարաւային կողմը և թէ Համադանի և Ասադ-Աբադի շըրջանում տեղի են ունենում անընդհատ ընդհարումներ, որոնք մեծ մասամբ վերջացած են թշնամու պարտութեամբ։ Այդ ընդհարումներից մէկի ժամանակ աչքի է ընկել իր քաջագործութեամբ մեր հայկական գունդը, որը ունեցել է 60 զոհ։

գ. Միջագետքի ճակատ. *Դեկտեմբերի 11—13-ի առինալից կռիւներից յետոյ, երբ Տիգրիսի ափին գտնուող Կուտ-էլ-Ամար ամրոցը մի քանի անգամ թուրքերի ձեռքն է անցնում և յետ խլւում՝ մի առժամանակ հանգստութիւն էր տիրում այս ճակատում։ Սակայն վերջերս կռիւներն սկսեցին նորոգուել։ Ամսոյս 25-ին գեներալ Էյլմէրան, որ մի առանձին ջոկատով օգնութեան էր գալիս անգլիացիներին, Տիգրիսի ափերին կռուի է բռնւում թուրքական երեք դիւիզիայի հետ և ջարդ տալով փախցնում դէպի Բաղդադ։ Թուրքերի կորուստներն են երկու թնդանօթ, 700 գերի և բազմաթիւ սպանուածներ։*

դ. Եգիպտական ճակատ. *Սուէզը գրաւելու և անգլիացիներին Եգիպտոսից դուրս անելու անցեալ տարուայ անյաջող փորձերից յետոյ այս ճակատում կռիւներ համարեա չկային։ Բայց այժմ, ինչպէս երևում է, թուրքերն ու գերմանները նորից ուզում են առաջ քաշել այս հին ծրագիրը։*

*Եւ այժմ այս գործը հրոսակախմբային արշաւանքների սահմաններում է կատարւում։ Դեկտ. կէսերին անգլիացիք պատահում են 3000 հոգուց բաղկացած մի հրոսակախմբի և նրան ջարդ տալով ցրւում։ Թշնամին տալիս է 82 գերի և 400 սպանուած. իսկ այս քանի օրս էլ անգլիացիք հետապնդելով Սէյիդ-Հարունի առաջնորդութեամբ գործող բեդուինների մի հրոսակախմբի՝ գրաւում են նրա գրեթէ ամբողջ ռազմամթերքը, պարէնը և բեռնակիր անասունները։*

*Այսպիսի հրոսակախմբերն, ի հարկէ, ռազմական տեսակէտից որևէ վտանգ չեն ներկայացնում Անգլիայի համար, սակայն՝ նրանք մտահոգիչ են քաղաքական տեսակէտից. նրանք կարող են սնունդ տալ այն ագիտացիային, որ թուրք գերմանական գործակալները շարունակ վարում են Անգլիայի մահմէդական հպատակների մէջ։*

ե. Դարդանէլի ճակատ. *Սուվլէն թողնելուց յետոյ շատերի համար պարզ էր արդէն, որ դաշնակիցները Գալիպոլին պէտք է թողնեն, մանաւանդ որ Սոֆիայի վրայով արդէն կանոնաւոր հաղորդակցութիւն էր հաստատուած Պոլսի և Բեռլինի միջև։ Այսօր Գալիպոլիի դատարկումը կատարուած փաստ է արդէն. Վերջին շաբաթներս թշնամի կողմերն իրար վրայ ուղղակի կրակի լաւա էին թափում. թուրքերը ռմբակոծում էին գլխաւորապէս լաւա-Սէդիլ Բախրայի ամրութիւնները, իսկ Ֆրանսիացիք ու անգլիացիք՝ թուրքերի առաջին ափի մարտկոցները։ Սակայն՝ այս կռիւները դաշնակիցների համար լոկ քօղարկում էին հանդիսանում անվտանգ կերպով Գալիպոլից դուրս գալու համար։ Ամսոյս 27-ին նրանք իրագործում են իրենց ծրագիրը տալով ընդամենը մի քանի տասնեակ մարդկային զոհ և 17 հատ թնդանօթ, որոնք նախապէս փչացրուած էին։*

*Այսպիսով՝ առաջիկայում Դարդանէլը պաշտպանուած կլինի միայն ծովի կողմից։*

## *ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄ*

*Սերբիական զօրքի ջարդուելուց և իր երկրից դուրս շպրտուելուց յետոյ այս ռազմաբեմում հանգստութիւն է տիրում, բացի Չեռնոգորական գծից, ուր կատաղի կռիւներ են տեղի ունենում։ Այստեղ աւստրո-գերմանական զօրքերը արևելեան կողմից հասել են Չեռնոգորիայի միջով հոսող Տարա գետին, տեղ տեղ էլ անցել ձախ ափը, հիւսիսային կողմից բռնել են Մոյկովաց-Լուկովօ գիծը, իսկ արևմտեան կողմից նրանք երևի շուտով դուրս կը մղեն չեռնոգորցիներին աւստրիական Հերցեգովինայից։ Չեռնոգորական զօրքը միացած է սերբիական զօրքի մնացորդների հետ, ինչպէս երևում է, բաժանուելէ փոքրիկ պարտիզանական խմբերի և այդպէս է կռւում թշնամու դէմ։ Բայց այսուհանդերձ չեռնոգորցիք զգալի հարուածներ են հասցնում թշնամու առանձին ջոկատներին։ Այսպէս՝ օրինակ Բոժայի, Բոդուի, Կատտարոյի ծովախորշում Բոգիչևիչի և Լուկովօյի մօտ եղած վերջին շաբթուայ կռիւներում ամեն անգամ թշնամու ջոկատները ջարդուելով յետ են փախել։*

*Սերբիական զօրքը, որ սանջաքի կռիւներից յետոյ քաշուել էր Ալբանիա և կենտրոնացել Էլբասանի և Սկիւտարի միջև՝ այժմ մաս-մաս անցնում է Յունաստան և միանում դաշնակիցներին։ Բուլղարները առայժմ անարգել առաջ են շարժւում Ալբանիայում դէպի արևմուտք։ Ցամաք եղած իտալական զօրքը կամ Էսադ փաշան, որ, ինչպէս ասում են, 20,000 ալբանացիներով անցել է դաշնակիցների կողմը, եթէ նոր բարդութիւններ չյարուցանեն՝ բուլղարները շուտով կհասնեն Ադրիականի ափերին։*

*Սալոնիկի գծի վրայ առայժմ հանգիստ է։ Երկու կողմում էլ տեղի է ունենում ույժերի կենտրոնացում։ Գերմանական զինակցութեան զօրքերը կենտրոնանում են Դոյրանի, Դեգելիի և Ստրումիցայի շրջանում։ Դաշնակիցներն էլ ամեն օր օգնական զօրք են ստանում։ Դեկտեմբերի սկզբներին Սալոնիկում դաշնակից զօրքի թիւը հասնում էր մօտ 160,000-ի։ Ի նկատի ունենալով այն հանգամանքը, որ այդ ժամանակից ի վեր ամեն օր տեղեկութիւն էր ստացւում նոր գեսանտի՝ ցամաք եղող զօրքի մասին և այն՝ որ Գալիպոլիից յետ քաշած անգլիական զօրքի մի մասը և Ալբանիայից նահանջած սերբիական զօրքերը նոյնպէս գործում են Սալոնիկում՝ պէտք է ենթադրել, որ այս շրջանում դաշնակիցների զօրքի թիւը հասնում է ներկայումս 200—250 հազարի։*

*Պատերազմական գործողութիւնները երևի շուտով կսկսուին։ Արդէն թշնամու սաւառնակները սկսել են իրենց գործողութիւնները Սալոնիկի վրայ, որ կռուի նախաշեմ պէտք է համարել։ Նկատելով, որ այս արշաւանքների ժամանակ գերմանական զինակցութեան հիւպատոսներն ու հպատակները նշաններով ուղղութիւն են տալիս սաւառնակներին՝ դաշնակիցները, հակառակ Յունաստանի բողոքներին, ձերբակալել են գերմանական, աւստրո-հունգարական, բուլղարական և թուրքական հիւպատոսներին և հպատակներին և դուրս հանել պատերազմի շրջանից։*

## *ԱՒՍՏՐՈ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ*

ա. Ռուսական ճակատ։ *Երկամսեայ դադարից յետոյ կռիւները ռուս-գերմանական ճակատի վրայ սկսել են ստանալ և արդէն հասել են հսկայական չափերի։ Մինչև դեկտ. կէսերը նկատելի էր կենդանութիւն թշնամու ձախ թևում՝ Ռիգա-Ֆրիդրիխշտադտ-Եակոբշտադտ Իլլուկստ և Նովօ-Ալէքսանդրովսկ գծի վրայ։ Գերմանացիները այստեղ ուզում էին ցոյց տալ, թէ ցանկանում են հիւսիսից Ռիգայի վրայ գալ, իսկ հարաւից՝ Դուինսկի։ Սակայն՝ Բալկանեան ռազմաբեմի արդի վիճակում այդ ծրագիրն անմիտ մի բան է հանդիսանում և շուտով պարզուեց, որ այդ գծերի վրայ գերմանացիների յարձակումները հանդիսանում են լոկ ռազմական ցոյց՝ քօղարկելու համար աջ թևի վրայ պատրաստուող ձեռնարկները, որոնք Ռումինիայի դիրքը որոշելու տեսակէտից խիստ մեծ նշանակութիւն ունեն։*

Այս թևի վրայ կռիւներն սկսուեցին դեկտեմբերի 14-ին և արդէն 16-ից սկսած կատաղի բնոյթ ստացան տարածուելով նախ՝ Ռումինիայի սահմանից սկսած մինչև Տարնոպոլ և ապա՝ Տարնոպոլից մինչև Չարտորսկի մօտերքը՝ ընդգրկելով այդպիսով մօտ 500 վերստ տարածութիւն: Կռիւը տեղի ունի այս ամբողջ գծի վրայ, սակայն՝ նա յատկապէս կենտրոնացած է երկու կէտում—Չերնովիցից հիւսիս-արևելք՝ Դնեստրի և Պրուտի միջև և Չարտորիսկի շուրջը, այսինքն ռազմագծի երկու ծայրում: Երկու կէտում էլ կռուի նախաձեռնութիւնը ռուսներինն է և սրանք առաջ են գնում ջարդ տալով թշնամուն և առնելով գերիներ, որոնց թիւն այժմ հասնում է մօտ 3,800-ի: Կռուի վախճանը այս գծի վրայ, ուր երկու կողմից կենտրոնացած են մօտ երեք միլիոն զօրք, դեռ անորոշ է. սակայն նշաններից երևում է, որ աւստրօ-գերմանացիք այս անգամ չեն կարող ունենալ այն յաջողութիւնները, որոնց սովորել էին անցեալ գարունքից սկսած:

Որպէսզի աւստրիացիների վիճակը թեթևացնեն և մէկ էլ ռուսներին այն միտքը չներշնչեն, թէ բալքանեան և գալիցիական գործողութիւնների պատճառով գերմանները թուլացրել են Ռիգա-Դուինսկի գիծը՝ նրանք շարունակում են իրենց յարձակումները ռուսական աջ թևի վրայ: Սակայն՝ Գալիցիայի հսկայական դէպքերի հանդէպ այդ յարձակումները այլևս ուշադրութիւն չեն գրաւում, մանաւանդ որ նրանք շարունակ յետ են մղւում ռուսների կողմից: Ռուսական ճակատի կենտրոնական մասերում այժմ լիակատար հանգստութիւն է տիրում:

բ. Արեւմտեան ճակատ. Ֆրանսական գծերի վրայ սկսած դեկտ. 15-ից տեղի ունի կատաղի թնդանօթամարտ: Այս կռիւը յատկապէս երեք կէտում ունի խիստ ինտենսիւ բնաւորութիւն—Արտուայում, Շամպանիայում և Վոգեզներում: Վերջին երկու շաբթուայ ընթացքում ֆրանսացիներին յաջողուել է ամբակոծել շատ գերմանական ամրութիւններ և պայթեցնել մի քանի զինապահեստ: Սակայն՝ կռուի գիծը փոխուել է յօգուտ ֆրանսացիների միայն Վոգեզներում, ուր նրանք խլել են գերմաններից Հարտմանսկոպֆի վրայ մի քանի ամրութիւններ և առել են մօտ 1,700 գերի:

Անգլիական և Բելգիական գծերի վրայ տեղի ունին սաւառնակների ամբակոծութիւն և թնդանօթամարտ փոփոխակի յաջողութեամբ:

գ. Աւստրօ-իտալական ճակատ: Այս ճակատի վրայ վերջին շաբթուայ ընթացքում նշանակալից դէպքեր տեղի չունէին: Դիրքերի կռուի դանդաղութեամբ երկու կողմերն էլ ամբակոծում էին իրար ամրութիւններն ու դիրքերը: Նկատելի էր, որ առանձին կռիւների ձեռներէցութիւնը գլխաւորապէս աւստրօ-հունգարացիներից էր բղխում: Իտալացիք բաւականանում էին միայն յետ մղելով թշնամու յարձակումները՝ առանց հակայարձակումների դիմելու:

### ԾՈՎԵՐԻ ՎՐԱՅ

Ծովերի վրայ եղած կռիւները, եթէ ի նկատի ունենանք խորտակուած նաւերի թիւը, աննպաստ են եղել դաշնակիցների համար: Բացի երկու փոխադրանաւից, որոնցից մէկը խորտակել են ռուսները Սև Ծովում և միւսը ֆրանսացիք Ադրիական ծովում և երկու աւստրիական ականակիրներից, որ խորտակել են անգլիացիք Ադրիականում՝ թշնամիներն այլ կորուստ չեն ունեցել:

Սակայն՝ դաշնակիցները ունեցել են զգալի կորուստներ: Պայթումից խորտակուել է անգլիական «Նաթալ» խոշոր զրահապատ յածանաւը: Ականի հանդիպելով խորտակուել է անգլիական առաջնակարգ զրահանաւ «Քինգ Էդուարդ VII»-ը: Խորտակուել է ֆրանսական «Մոնժ» սուզանաւը: Հիւսիսային ծովում գերմանացիք խորտակել են մի անգլիական սուզանաւ: Բացի սրանից՝ նրանք զանազան ծովերում խորտակել են երկու չեռնոգորական, մի ճապոնական, մի իտալական և չորս անգլիական փոխադրանաւ: Կրէտէի մօտ աւստրիական մի սուզանաւ խորտակել է նաև անգլիական «Պերս» մարդատար նաւը, ջրի տակն ընկղմելով մօտ 336 անմեղ ճանապարհորդներ:

Որովհետև այս վերջիններիս մէջ եղել են մի քանի ամերիկացիներ՝ Միացեալ Նահանգները բացատրութիւնների մէջ են մտել Աւստրօ-Հունգարիայի հետ: Այս հողի վրայ սպասւում են նոր բարդութիւններ այս երկու պետութեանց միջև:

30 դեկտ. Ս. Ջամալեան

## Գեղարուեստ

### ԱՅՍ ԻՐԻԿՈՒՆ

*(Նոր տարի)*

Այս իրիկուն բացի դուռս երկաթէ,
Ու ներս մտաւ աղջնակ մը մեղմօրէն,
Ծով-աչերէն սիրոյ արցունք կը կաթէ,
Եւ կը լսեմ որ կը կանչէ ինձ նորէն.
— Ողջո՜յն, ողջո՜յն իմ սիրական պօէտին,
Այս իրիկուն հին տարուայ օրն է յետին,
Առ քնարդ, պրկէ լարերը դողդոջ,
Նոր տարուայ հետ երգէ նոր կեանք, նոր բողբոջ…
Թող ըխւրածալ ցաւերն խապառ անհետին.
Ողջո՜յն, համբո՜յր իմ սիրական պօէտին…

Այս իրիկուն կոյս մը նազան և անուշ՝
Իր հայեացքով մտերմական ու ծաւի
Ցգուեց պանդուխտ եղբայրներուն իմ անուժ,
Մեզմ երգելով մոռացումը սև ցաւի.
— Իմ եղբայրնե՛ր անրջագուրկ, լուռ, տարտամ,
Որ կը սգաք ձեր հին յուշերը փարթամ,
Իմ եղբայրնե՛ր, հալածական և անտուն,
Նոր տարուայ հետ պիտ բացուի ձեզ նոր Առտուն…
Այս իրիկուն՝ ձեզ նոր յուշեր կը կարդամ,
Իմ եղբայրնե՛ր, արևազուրկ ու տարտամ…

Այս իրիկուն դաշտէն արիւն կը բուրէ,
Ծառերը՝ չոր, լեռը հագած արեան ցօղ…
Բայց ահա նա՝ հարս մը չքնաղ, փրփուրէ.
Կը թափառէ գիւղերուն մէջ ծխացող.
Մոխիրին մէջ ցանելով սերմ ճաճանչէ,
Աւերակի մօտը կանգնած կը կանչէ.
— Օ՜ն, ալացէ՛ք դէպ լուսաշող, կոյս բարձունք,
Թող վերանան կսկիծ, նզովքն ու արցունք.
Ոսկերնուդ տակ թող գալարուի վատ Ցուղան…
Նոր տարուայ հետ ձեզ բերեր եմ խոփ, գութան.
Օ՜ն, դուրս ելէ՛ք ճամբաներէն նեղանցուկ,
Օ՜ն, ալացէ՛ք դէպ լուսաշող, կոյս բարձունք…

*Այս իրիկուն փողոցին մէջը աղօտ*
*Կը թափառէ որբը լքուած, անօթի,*
*Այսօր կզգայ փայփայանքի, մօր կարօտ,*
*Եւ արցունքէն աչիկները կաղօտի...*
*Կին մը անցաւ փաղաքշանքով մայրական*
*Կրծքին սեղմեց թշուառ որբին ու լացաւ.*
*Ցայսով ժպտեց դալուկ դէմքը մանկական.*
*— Օ՛ր ծր բալիկ տարին եկաւ ու անցաւ...*
*Դու զո՛հ եղար մե՛ծ Եղեռնին վայրենի,*
*Այժմ ծծէ ստինքներս մայրենի,*
*Եւ քուն քաշիր, ծրծր բալիկ, ի՜շ, ծրծր.*
*Որ շուտ մեծնաս ու զարթնես մեզ Նոր Օր...*

*Կարապ*

# Մատենախօսութիւն

Արհաւիրքների է ենթարկուած այժմ հայութիւնը։ Բայց արհաւիրքները մշտական երևոյթ են եղել հայ հայրենիքում։ Բարբարոս սուրը շատ անգամ է գերեզմանոցի վերածել հայոց երկիրը, բայց երբէք չէ կարողացել արմատախիլ անել, անհետացնել հայ ժողովուրդը և նրա մշտական ձգտումը դէպի քաղաքակրթութեան լոյսը... Ամենադարհուրելի ժամանակներում անգամ հայը կարողացել է պահպանել իր ազգային ամենամեծ սրբութիւնը — իր գիրն ու գիրքը։

Մենք էլ պարտաւոր ենք մեր նախնիքների կտակին անսալ։ Ներկայ օրերում, թւում է շատերին և շատերն են ասում, որ անհնարին է գրականութեան մասին մտածելն անգամ։ Այս մի մեծ սխալ է։ Մենք մեծամեծ ջանքեր ենք անում մեր ազգային կեանքը մահուան ճիրաններից ազատելու համար և չը պէտք է մի րոպէ անգամ մոռանանք, որ ազգային կեանքի ամենասուրբ և ամենակարևոր գործօններից մէկը գրականութիւնն է։ Աշխատում ենք պաշտպանել մեր ֆիզիքական գոյութիւնը քրդի ու օսմանցու եաթաղանից, սովից ու հիւանդութիւնից, պիտի միաժամանակ աշխատենք պաշտպանել մեր գրականութիւնը նրա ահաւոր և արիւնարբու թշնամիներից — մոռացութիւնից և վայրենացումից։ Այս էլ մի ինքնապաշտպանութիւն է, մեծ ու կարևոր և այս ինքնապաշտպանութեան մէջ ամենագլխաւոր դերը պատկանում է պարբերական մամուլին։

Այսպէս ըմբռնելով մեր պարտաւորութիւնը մայրենի գրականութեան հանդէպ, մենք առանձին ուշադրութիւն պիտի նուիրենք ազգային այդ մեծ գործօնին, աջակցենք, մեր կարողութեան չափով, նրա ժողովրդականացման, որպէս զի նա խրախոյսներ գտնէ անկեղծ և բարեկամական վերաբերմունքի միջոցով։ Մենք մտադիր ենք զարգացնել մատենախօսական բաժինը և պիտի աշխատենք խօսել ամէն մի՛ փոքր ի շատէ ուշադրութեան արժանի հայերէն գրքի մասին։ Միաժամանակ պիտի ջանանք կարելի եղածին չափ հաշիւ տալ մեր ընթերցողներին և այն օտարալեզու գրքերի մասին, որոնք հայ կեանքին են վերաբերում։ Ուստի խնդրում ենք հեղինակներին և թարգմանիչներին ուղարկել մեզ իրանց աշխատութիւնները։ Խմբագրութեանս ուղարկած իւրաքանչիւր գրքի մասին երկու անգամ ձրի յայտարարութիւն կը տպուի թերթի վերջին երեսում։

*Խմբագրութիւն*

---

Ив. Гнуки. Мотивы армянской Поэзіи. Цѣна 40 коп.
1915, Саратовъ.

*(Գրախօսական)*

Ռուսահայ բանաստեղծութեան նուիրուած այս պատկերազարդ գրքոյկի նախաբանում հեղինակն յայտնում է, որ մեր թատերգութեան, վէպի, ինչպէս և ռուսահայ գրականութեան մասին եւ հետզհետէ լոյս կընծայէ նման գրքոյկներ։ Հէնց այդ հանգամանքը նկատի ունենալով՝ կուզէի մի քանի խօսք ասել արդէն լոյս տեսածի թերութիւնների մասին, որոնք կարող են այսպիսով թերևս չկրկնուել պ. Գնունու յառաջայ աշխատութիւնների մէջ։

Բուն նիւթին նուիրուած է ընդամենը 64 երես։ Իմ կարծիքով՝ այդ ծաւալն իսկ հերիք կարող էր լինել օտար ընթերցողներին որոշ գաղափար տալու համար ռուսահայ քնարերգութեան մասին, պայմանով սակայն, որ մի կողմ թողնէինք և Լեռնցին, և Լ. Մանուէլեանին և Լևոն Գրիգորեանին։ Այդ բանաստեղծները ոչ ինքնին որևէ արժէք ունին և ոչ էլ հայոց գրականութեան ընթացքի վրայ են ազդել։ Ճիշտ է, նրանց նուիրուած են 40 տող միայն, բայց դա եւ աւելորդ է մի այսպիսի փոքրածաւալ աշխատութեան մէջ, զուր տեղը հարցը խճողում է։

Միւս կողմից Ս. Շահազիզին նուիրուած են 17 երես, այսինքն՝ ամբողջ գրքոյկի քառորդ մասը, այն ինչ, Յ. Յովհաննիսեանին և Յ. Թումանեանին միասին՝ 9 երես միայն։ Սա մի աններելի անհամաչափութիւն է, ինչ տեսակէտից էլ որ հարցը քննելու լինենք։ Երևի պ. Գնունին ռուսերէն լեզուով բաւական նիւթ է գտել Ս. Շահազիզի մասին և օգտուելու ոգևորուելով շեղուել է իր ընդհանուր նպատակից։ Ուրիշ թէ սխալ լինի մեր այս ենթադրութիւնը, փաստն այն է, որ «Լեռնի վշտի» հեղինակը ոչ «մեծ տաղանդ» է (էջ 45) և ոչ էլ կարող էր 4—5 երեսից աւելի տեղ բռնել այս գրքոյկի մէջ։

Բայց որ գլխաւորն է, պ. Գնունին չէ կարողանում պայծառ կերպով ցուցադրել ռուսահայ քնարերգութեան զարգացման ընթացքը, ոչ էլ միշտ ճշտիւ ընորոշում է իւրաքանչիւր բանաստեղծի յատկանիշները։

Այսպէս թէ այնպէս, մի կողմ թողնելով երկրորդական նկատողութիւնները *), պէտք է աւելացնել, որ նման հրատարակութիւնները անշուշտ որոշ օգուտ կըտան մեր գրականութեամբ հետաքրքրուող օտարներին, որոնք այս գրքոյկի մէջ կըգտնեն տեղեկութիւններ Ռ. Պատկանեանից մինչև մեր օրերը հանդէս եկած ռուսահայ բանաստեղծների մասին, մանաւանդ որ նմուշների համար մէջ բերուած ռուսերէն թարգմանութիւնները յաջող հատուածներ էլ ունին։ Բացի այս՝ գրքոյկի վերջում հեղինակը զետեղել է ռուսահայ բանաստեղծութեան մասին ռուսերէն լեզուով լոյս տեսած գրքերի և յօդուածների ցանկը։

*Մ. Մատէնճեան*

---

Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացաւ Գուրգէն Հայկունու «Գարնանային Հովեր» պոէմը և «Հայկական առածների լոտօ», հրատարակութիւն «Մանուկ» ընկերութեան։

# Քրոնիկոն

Գաղթականների վիճակը կարգաւորող գեներալ Վ. Մ. Թամամշևը, հիմնուելով ներքին գործոց նախարարութեան կից կազմակերպուած առանձին խորհրդակցութեան հրամանագրի վրայ, առաջարկել է նահանգական կոմիտէներին նպաստներ չըտալ այն աղամարդ գաղթականներին, որոնք աշխատանքի ընդունակ լինելով՝ խուսափում են աշխատելուց։ Մինչդեռ գաւառներում նպաստից զրկւում են առանց խտրութեան բոլոր տղամարդկանց, որից առաջ է գալիս արդարացի բողոք և տրտունջ գաղթականների կողմից։

— Գաղթականներին նշանակուած է ալիւր շնչին 1 1/2 գըր-

*) Այդպիսի նկատողութիւններից են, օրինակի համար, գրքոյկի վերնագրի անհամապատասխանութիւնը, «Արաքսի արտասուքը» 1854 թ. գրուած համարելը և այլն։
Հեղ

ուանքայ, բայց հազիւ ստացւում է 1 գր.։ Գաղթականները 10 օրուայ ստացած բաժինը ուտում են 6 օրում և ապա մնացած օրերը մնում են քաղցած։ Նպատակայարմար է գաղթականների համար հիմնել պահեստներ և նպաստ տալ կանխիկ դրամով։

— Երէկ Բաքուից ժամանեց Թիֆլիս Պետ. Դումայի անդամ, պ. Մ. Պապաջանեանը։

— Խմբագրութիւնս յայտնում է իր խորին շնորհակալութիւնը այն անձանց և հիմնարկութիւններին, որոնք նամակներով, զանազան տեղերից, շնորհաւորեցին «Համբաւաբերի» հրատարակութիւնը։

Կ. Հ. Բ. Ը-ը շնորհակալութեամբ ստացաւ Նորին Օծութեան Վեհափառ կաթողիկոսից նոր տարուայ շնորհաւորութեան առթիւ տասն օրինակ 1916 թ. օրացոյց։

— Կարապետ Եպիսկոպոսի յիշատակը յաւերժացնելու համար ընտրուած յանձնաժողովի նախագահ Մ. Բէրբէրեանը և քարտուղար Մ. Խոստիկեանը և անդամները Մ. Արեղեանը Ս. Կանայեանցը և Սահակ քահանայ Սահակեանը յայտնում են, որ նուէրներ կարելի է ուղարկել «Համբաւաբերի» խմբագրութեանը կամ «Тифлисскій Купеческій банкъ»-ի հասցէով յանձնաժողովի անդամ-գանձապահ պ. Մկրտիչ Բալանթարեանին։ Յանձնաժողովը մտածում է՝ նայած նուիրաբերութեան գումարին՝ հանգուցեալ սրբազանի անտիպ գործերից մի կամ մի քանի հատոր լոյս ընծայել կենսագրականով միասին և կամ նրա յիշատակին նուիրուած մի գրական-գիտական ժողովածու հրատարակել։

—Հայկ. կենտ. կոմ. շնորհակալութեամբ ընդունում է նուէրներ՝ դրամ, իրեր և ուտելիք՝ տեղական չքաւորների և գաղթականների համար առաջիկայ ծննդեան տօների առթիւ, Абасъ-Абадская площ. № 7։

— Նպաստամատոյց ընկերութիւն ստացել է Լոնդոնից բարեգործուհի Խատիսեանի միջոցով յօգուտ Վանի որբերի 100 ֆ. ստերլինգ (մօտ 1300 ր.)։

— «Հրատապ սփոփանք Մայր Հայաստանցիներին»-ի հիմնադիր պ. Տ. Նազարեանը կազմակերպում է գաղթականների համար ծննդեան տօնածառ և թատրոնում, որին կարող են մասնակցել «հայութեան բոլոր խաւերը»։

— Թիֆլիսի քաղաքային վարչութիւնը հիւսիսային Կովկասում գնել է 694 վագոն ալիւր։

— Թիֆլիսում հաստատուած է հետևեալ սակագինը. հացի առաջին տեսակի գրւանքան 6½ կ., թոնրինը, 7 կ., մսի 1 տեսակը 22 կ., գլուխ շաքարը 22 կ. և կարագը 1 ր. 30 կ.

— Պետրոգրադում խոր ծերութեան հասակում կնքեց իր մահկանացուն հայ բեմի խոշոր հիմնադիրներից մինը, Գէորգ Ջմշկեանը։ Մահացուցակը կը տանք հետևեալ անգամ։

—«Հորիզոնի» Ալէքսանդրապոլի թղթակիցը մռայլ գոյներով է նկարագրում այդ քաղաքում ապաստան գտած 2500 գաղթականների դրութիւնը։ «Ամեն տեղ, գրում է պ. Կարապետեանը, ցրտից ու քաղցից կուչ եկած մարդիկ, մեծ մասամբ կանայք ու երեխաներ։ Վառարաններ համարեա թէ չկան։ Բոլորը կիսամերկ են, համարեա բոբիկ...մայրերը, յուսահատութեամբ երեխաները ձգած և նրանց քովը կուչ եկած, նայում են ցրտից գալարուող փոքր ու կիսամերկ անդամներին։ Արցունքը չորացած նրանց աչքերին և բողոքի «խօսքը այլ ևս լռած շրթներին»։ Թղթակիցը հաղորդում է, որ Ալէքսանդրապոլի գաւառում մօտ 20,000 գաղթական կայ։ Գիւղերում ապրող 18,000-ի մասին ասում է, որ տեղեկութիւնները մեծ մասամբ մխիթարական են։ Արդէն յայտնի եղաւ այն սրտաճմլիկ, ջերմ վերաբերմունքը, որով պահում-պահպանում է հայ գիւղացին իր եղբայրներին։

— Թիֆլիսի քաղաքային վարչութիւնը ի գիտութիւն ազգաբնակութեան յայտարարում է, որ, իր տեղեկութիւնների համաձայն, քաղաքում ստացուած է մեծ քանակութեամբ շաքար և վաճառւում է քաղաքի զանազան մասերում։

— Հայ ուսուցչական միութեան ընդհանուր ժողովը որոշել է փոփոխել իր կանոնադրութեան մի կէտը, որով անդամ կարող են լինել ոչ միայն հայոց դպրոցների ուսուցիչները, ինչպէս ցարդ, այլ և բոլոր հայ ուսուցիչները, ուրեմն թէ հայ և թէ պետական և այլ դպրոցների հայ ուսուցիչները։ Որոշուել է Վեհափառ Հայրապետի մօտ ուղարկել առանձին պատգամաւորութիւն ուսուցիչների անտեսական նեղ դրութիւնը բացատրելու։

— Դեկտ. 16-ին Թիֆլիսում վախճանուեց դերասանուհի տիկ. Փառանձեմ 51 տարեկան հասակում։ 1913 թ. Բաքւում տօնուեց հանգուցեալի բեմական գործունէութեան 30-ամեակը։ Տիկ. Փառանձեմը յայտնի էր իբրև վերին աստիճանի բարեխիղճ դերասանուհի. իբրև մարդ շատ բարի էր և երբէք չէր մերժում իր բարոյական ու նիւթական աջակցութիւնը ամենքին, մանաւանդ իր դերասան և երիտասարդ ընկերներին։

— Բագրատ եպիսկոպոսը Էջմիածնից հեռագրում է, որ Վեհափառ Հայրապետը հիւանդացել է։

— Պետական Դումայի անդամ պ. Մովսէս Աճէմեանը վերջին օրերս Թիֆլիսումն էր։ Նա երէկ մեկնեց Բաքու։

— Անգլո-ֆրանսական զօրքերը բոլորովին թողել են Գալիպոլու թերակղզին։

— Իտալական հեռագրական գործակալութիւնը հաղորդում է հայերի նոր կոտորածի մասին Անկիւրիայի, Իկոնիայի և Կարնի վիլայէթներում։ Հայերի ստացուածքը յարքունիս է գրաււում, մասամբ էլ յափշտակւում է տեղական բնակչութեան կողմից։

— Кавк. Слово հաղորդում է, թէ իտալական շրջաններում միտք է ծագել, որ չէզոք երկիրները միասին միջամտեն յօգուտ Տաճկաստանի հալածուող հայերի։ Միջամտութեան ձեռներէցութիւնը մտադրութիւն կայ դնելու Ամերիկայի Միացեալ Նահանգների վրայ։ Մտածում են կազմել երկրի իսկական վիճակը պարզելու համար մի յանձնաժողով։

— Դեկտեմբերի 20-ին երեկոյեան կայս. երաժշտական դպրոցի դահլիճում տեղի ունեցաւ դասախօսութիւն-երեկոյթ։ Դասախօսեց պ. Մ. Վարանդեանը նիւթ ունենալով «Ազգ և ինտելիգենցիա»։ Բացի դասախօսութիւնից եղան նաև արտասանութիւններ Տիկ. Սեւումեանի, օր. օր. Արմենուհի Տիգրանեանի, Վարսենիկ Աղասեանի, պ. պ. Մ. Մանուէլեանի, Աղեանի և ուրիշների կողմից։ Երգեցին պ. Ամիրջան և պ. Սարգարեանի երգեցիկ խումբը հայկական ժողովրդական երգեր։ Դահլիճը ծայրէ ծայր լիքն էր և դղրդում էր արտասանութիւններից յետոյ բուռն ծափահարութիւններից։

Թիֆլիսի տրամուայը դեկտեմբերի 24-ից անցաւ ամբողջութեամբ քաղաքային վարչութեան ձեռքը։ Ներկայումս վարչութիւնը զբաղուած է հաղորդակցութիւնը կանոնաւորելու հարցով որ կենսական նշանակութիւն ունի Թիֆլիսի ազգաբնակութեան համար։ Այդ նպատակով պէտք է աւելացնել վագոնների թիւը, որոնք այժմ սաստիկ պակասել են, ահագին անյարմարութիւններ ստեղծելով քաղաքացիների համար։ — Քաղաքային Դուման դեկտեմբերի 28-ի նիստում 150 հազար ր. յատկացրեց քաղաքային վարչութեան ծառայողների ռոճիկները աւելացնելու համար։

## վերջին հեռագրերից

ՏՈԿԻՕ. Երբ նախարարութեան նախագահ Օկուման վերադառնում էր ավտոմոբիլով պալատից՝ նետուեց նրա վրայ մէկ ռումբ, որը չպայթեց, նետուեց երկրորդ ռումբը, որը պայթեց, բայց վնաս չտուեց, որովհետև ավտոմոբիլը կարողացաւ ժամանակին հեռանալ։ Չարագործը անհետացաւ։

ԼՈՆԴՈՆ. Պարտադիր զինուորակոչի հարցի մասին վիճաբանութիւնները պատգամաւորական պալա-

տում վերջացան Գենդերսոնի ճառով. «Մենք, ասաց Գենդերսոնը, անցեալում հարկադրուած եղանք դիմելու ստիպման յանուն մեր ժողովուրդի բարօրութեան, չենք կարող չդիմել նոյն միջոցին և այժմ, երբ խնդիրը վերաբերում է ոչ միայն մեր ազգի, այլ և փոքր ազգերի փրկութեան, որոնք գիտակցում են, որ միայն մեր յաղթութիւնը կարող է նրանց ազատել օտար տիրապետութիւնից»։ Օրինագիծը ընդունուեց ճնշող մեծամասնութեամբ 431 ձայնով ընդդէմ 30-ի։ Քուէարկութեան՝ հետևանքի յայտարարութիւնն ընդունուեց բուռն համակրանքով։ Փոքրամասնութիւնը կազմում էին արմատականները ու բանւորական կուսակցութեան ներկայացուցիչները։

ՊԵՏՐՈԳՐԱԴ. Գերագոյն Հրամանատարի Շտաբից. Կովկասի ճակատում։ Արխուէ գետի հովտում մերոնք ցրեցին տաճկաց մէկ գունդ, որը ամրացնում էր դիրքերը։ Արճէշի շրջանում Խուսինէկ գիւղի մօտ տեղի ունեցան ընդհարումներ մերոնց և քրդական մեծաքանակ ույժերի մէջ։

ԶՈՒԼՖԱՅԻՑ. Հայկական խմբերից մէկը ունեցաւ թշնամու հետ յաղթական ճակատամարտ։ Խումբը տուեց 60 զոհ։

ԿԱՐԱԿՈՒՐՏ. Բասէնի շրջանի մօտ 5000 փախստական մինչև օրս չեն ստանում կառավարութիւնից նըպաստ, չընայած, որ դիմում եղել է Կարսի նահանգական կոմիտէին։ Փախստականները գտնւում են ծայրայեղ կարօտութեան մէջ։

---

ՊՈՍՏԱՐԿՂ. Երեւան՝ Տէրունեանցին։ Համբուսերը պատկերազարդ հանդէս չէ, թէև երբեմն տալիս է նկարներ։

---

ՎՐԻՊԱԿՆԵՐ.—«Վրաց աշխարհից՝» յօդուածի սիւնեակ 11, տող 3 «Մասնախօսութիւն» պէտք է լինի «Գրականութիւն», իսկ տող 15 պէտք է աւելացնել «և Ակակի Ծերեթելու»։

«Գրիգոր Զոհրապ» մահացուցակի, սիւնակ 23։ ա. տողում «տաճկաց» պէտք է լինի «տաճկահայ», իսկ նոյն յօդուածի վերջին երկու տողը խմբագրութեան ծանօթութիւն պիտի լինէր։

Խմբագիր՝ Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія "Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1 Дозволено военн. цонз.